# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

12 ԴԵԿՏԵՄԲԵՐ . 1967
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 46-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении



## Բովանդակություն

# Содержание





# ՊԱՏՄՈՒԹՅԱՄԲ ՍՏՈՒԳՎԱԾ ՈՒՂԻ

Ընդամենը մեկ ամիս է անցել Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյա տարելիցի նշանավորումից, սովետական համերաշխ ժողովուրդների կեսդարյա հերոսական մաքառմամբ վաստակած հաղթանակի փառավոր տոնահանդեսի օրերից: Ակատագրված աշխատանքի, քննախույզ բանականության և ազգերի լենինյան եղբայրության պատմական նվաճումների համաշխարհային հաշվեհարդարի օրեր էին դրանք: Սոցիալիստական երկրների բազմամիլիոն աշխատավորության և ողջ աշխարհի կոմունիստների, կեղեքվող և առաջավոր մարդկության խանդաղատալի, երախտագիտական բուռն դրվատանքներին արժանացավ սոցիալիզմի հզորագույն հայրենիքը:

Սոցիալական արդարության ու ազատության ծարավ բազում ժողովուրդներ հանձին իրենց պատգամավորների, մի անգամ ևս տեսան ու համոզվեցին, որ մեր ապրած դարն իրոք սոցիալիզմի դյուցազնաքայլ երթի դարն է, որ իմպերիալիզմի արյունալի հոգեվարքից մարդկությունը մի ելք ունի՝ պատմական փորձով արդեն ստուգված սոցիալիստական հասարակության կառուցման ուղին: Ռուսաստանի աշխատավորներն իրենց արյամբ ու մեծագույն տառապանքների գնով, լենինյանների ղեկավարությամբ առաջինը հարթեցին երջանկաբեր հասարակության այդ մայրուղին: Եվ պատմական այդ մեծ տոնին Մոսկվա ժամանած աշխարհի բոլոր ծագերում պայքարող մեր բարեկամների պատվիրակները ջերմագին խոսքերով իրենց բարոյական անկեղծ տուրքը հատուցեցին այն վիթխարի և շարունակվող հերոսամարտի վինվորներին, որոնք անվարան և անկոտրում կամքով, մարքսիզմ-լենինիզմի բոսոր դրոշը ծածանեցին մեր երկրում և այդպիսով՝ անարգ կապիտալիզմի կործանման և սոցիալիստական հասարակության հաղթանակի սկիզբը դրին:

Ուշագրավ է, որ Հոկտեմբերի տոնահանդեսի նախօրեին սովետական պետության գերբն ամուր և մեկընդմիշտ մխրճվեց մոլորակներից գեղեցկագույնի՝ Վեներայի կրծքում, մարդկության գալիք սերունդներին թողնելով սոցիալիստական հասարակության ստեղծագործ հանճարի այդ դարակազմիկ խոյանքի սիմվոլը: Նույնքան և նշանակալի է, որ այդ մեծ տոնի շեմին Մոսկվայում իր նիստերն էր ունենում ՍՍՀՄ Գերագույն սովետի 7-րդ գումարման 3-րդ սեսիան, որը սովորական գործարար մթնոլորտում քննարկեց ու հաստատեց սովետնե-

րի երկրի ժողովրդական տնտեսության զարգացման առաջիկա երեք տարիների (1968—1970) հոյակապ պլանը:

Հոկտեմբերի 27—28-ին Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի 7-րդ գումարման 2-րդ սեսիան ևս քննարկեց ու հաստատեց ներկա հնգամյակի՝ 1968—1970 թվականների ժողովրդական տնտեսության զարգացման պլանները: Կես դարի ընթացքում որքա՜ն դժվարին, բայց փառավոր ուղի է կտրել Սովետների երկիրը: Հիսուն տարում ՍՍՀՄ-ում կառուցված և գործարկված են ավելի քան 40 հազար խոշոր ձեռնարկություններ: Դա արված է այն երկրում, որը 1920 թվականին 45—50 անգամ պակաս արդյունաբերական արտադրանք էր տալիս, քան ԱՄՆ-ը: Հայտնի է, որ ցարական Ռուսաստանում բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքը 13—14 անգամ պակաս էր, քան ԱՄՆ-ում, 11—12 անգամ պակաս՝ քան Անգլիայում և 10 անգամ նվազ՝ քան Գերմանիայում: Նախահեղափոխական Ռուսաստանի ինդուստրիան պարփակվում էր տարեկան 4 միլիոն տոննայից քիչ ավելի թուջի և նույնքան պողպատի արտադրման շրջանակներում: Այստեղ տարեկան արդյունահանվում էր 10 միլիոն տոննա նավթ, իսկ բոլոր էլեկտրակայանների հզորությունը կազմում էր մեկ միլիոն կիլովատ, որը 4 անգամ պակաս է միայն Բրատսկի գիգանտի հզորությունից:

Ի՞նչ է ցույց տալիս մեկ աշխարհի երկու սիստեմների հիսնամյա զարգացման հաշվեկշիռը: Այն, որ Հոկտեմբերից հետո սովետների երկրում 36 անգամ աճել է աշխատանքի էլեկտրազինվածությունը, իսկ նրա արտադրողականությունը 1913 թվականի համեմատ՝ աճել է 15 անգամ և այն էլ նոր, առաջավոր տեխնիկայի ու գիտության հիմքերի վրա: Կեսդարյա զարգացման հաշվեկշիռը վկայում է մի բան, որ 1918—1966 թվականների ընթացքում արդյունաբերական արտադրանքի տեմպերի տարեկան միջին աճը կազմում է ՍՍՀՄ-ում՝ 9,9, ԱՄՆ-ում՝ 3,7, Անգլիայում՝ 2,1, Ֆրանսիայում՝ 3,7, ԳՖՀ-ում՝ 3,4 տոկոս:

Սոցիալիզմի վերջնական հաղթանակի շնորհիվ, արմատապես փոխվել է սովետների անծայրածիր երկրի երբեմնի պատկերը, նրա հասարակական, քաղաքական, գաղափարա-բարոյական բուն ստրուկտուրան: Մեծ Լենինի հայրենիքում կատարված բոլոր սխրանքների և ստեղծագործ խոյանքների ղեկի մոտ միշտ կանգնած է եղել նրա կոփած կոմունիստական կուսակցությունը, որն իր մոտ 13 միլիոն անդամների գործունեությամբ, շարունակում է նոր կյանքի նավը հաստատակամ առաջ մղել դեպի կոմունիզմի ափերը:

Այսպիսով, անցած 50 տարիների արդարացի տերն ու տնօրեն պատմությունն իր հաշվեմատյանում նշել է մինուս կապիտալիզմի ու պլյուս սոցիալիզմի օգտին: Սա է պատմության անագորյուն և ակտիվ սալդոն, որը հարկադրված խոստովանում են միջազգային բուրժուազիայի հեռատես գուշակները:

Այս հնգամյակի անցած երկու տարիների (1965—1967) պլանների հաջող կենսագործումը վկայում է այն մասին, որ ՍՄԿԿ XXIII համագումարի հաստատած մեր ընդհանուր զարգացման ընթացքը միանգամայն ռեալ է ու ճիշտ: Ընթացիկ հնգամյա պլանի կատարման և զարգացման վերաբերյալ տված իր զեկուցման մեջ, ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահի տեղակալ և պետպլանի նախագահ Ն. Բայբակովը մի քանի հակիրճ թվերով ուրվագծեց երկրի խոշոր առաջխաղացումը հասարակական կյանքի բոլոր մարզերում: Այսպես, օրինակ, ՍՍՀ Միության ժողովրդական տնտեսության զարգացումն ընթացիկ հնգամյակում հետևյալ պատկերն ունի.



Աճման տարեկան միջին տեմպերը տոկոսներով

| | 1961-1965 *թթ.* | 1966-1967 *թթ.* |
|---|---|---|
| *Ազգային եկամուտը* . . . . . . . . | 5,7 | 7,2 |
| *Արդյունաբեր. արտադրանքը* . . . . . | 8,6 | 9,4 |
| *Գյուղատնտեսութ. արտադրանքը* . . . . . | 2,4 | 4,2 |
| *Բնակչության շնչին ընկնող ռեալ եկամուտը* . . | 3,6 | 5,9 |
| *Մանրածախ ապրանքաշրջանառություն* . . . | 6,0 | 8,7 |

Ի՞նչ է հետևում այս պերճախոս աղյուսակից: Այն, որ ներկա հնգամյա
պլանի երկու տարիների արդյունքներն ավելի քան բավարար են: Շարունակ-
վում է սոցիալիստական հանրակարգի բարձրատեմպ ընթացքը: Ու եթե փոր-
ձենք կոտորակել վերոբերյալ տոկոսները, ապա կստանանք Սովետական Միու-
թյան էկոնոմիկայի զարգացման հետևյալ ոգեշնչող պատկերը. անցած երկու
տարիներին (1966—1967 թթ.) ազգային եկամտի տարեկան միջին բացարձակ
աճը կազմում է 14,1 մլն ռուբլի: Երկրի հիմնական ֆոնդերն աճել են ավելի
քան 80 միլիարդ ռուբլով: Հսկայական ծավալի կապիտալ շինարարության,
նորանոր գործարանների ու ֆաբրիկաների գործարկման համընթաց, նշանա-
կալի նվաճումներ կան ոչ միայն արդյունաբերության զարգացման, այլև գյու-
ղատնտեսության առաջխաղացման ասպարեզներում:

Հաջողությամբ լուծելով կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծ-
ման կնճռոտ ու բարդ պրոբլեմները, էներգետիկայի, մեքենաշինության, էլեկտրա-
տեխնիկայի, քիմիայի, մետալուրգիայի և գիտության ու տեխնիկայի բազմապիսի
մարզերում, սովետական հասարակությունը շարունակում է մնալ ամբողջ աշ-
խարհի առաջավոր մարդկության ներկա և ապագայի հուսալի փարոսը:

Միայն անցած երկու տարիներին 5,9 տոկոսով ավելացել է մեր բնակչու-
թյան տարեկան միջին ռեալ եկամուտը, չորս ու կես միլիոն աշխատավորների
աշխատավարձը բարձրացավ զգալիորեն, ավելի արագացան սպառման միջոց-
ների արտադրության տեմպերը. այս տարի օգտագործման կհանձնվի 84 միլիոն
քառակուսի մետր բնակելի տարածություն և այլն: Նյութատեխնիկական, կուլ-
տուր-գիտական մեր նվաճումները եղել են ու կմնան այն հզոր կռվանները,
որոնց հայելով, կապիտալի երկրների աշխատավորները վերջնականապես կը-
համոզվեն, որ աշխարհի սոցիալական վերափոխման սովետական կեսդարյա
փորձը մնում է անգնահատելի:

Այս առումով ավելի ազդեցիկ և պատկառելի են գալիք երեք տարիների
զարգացման տվյալները: Առաջիկայում ՍՍՀՄ արդյունաբերության արտադրան-
քը կաճի 8,1 տոկոսով, իսկ ամբողջ հնգամյակում այդ աճը կկազմի 53 տոկոս.
«Ա» խմբի (արտադրամիջոցների) արտադրությունը կաճի 55, իսկ «Բ» (սպառ-
ման միջոցների) խմբինը՝ 45 տոկոսով: Սա նշանակում է, որ բնակչության կեն-
սամակարդակի բարձրացման համար ստեղծվում են առավել կայուն հիմքեր,
որոնք հնարավորություն կընձեռեն ավելի մեծ արդյունավետությամբ բավարա-
րելու աշխատավորության բազմապիսի պահանջմունքները:

Հնգամյակի երրորդ տարվա (1968) ընթացքում երկրի հզորության վերել-
քը կարտահայտվի հետևյալ գոտեպնդիչ տվյալներով. 690 միլիարդ կվտ-ժամ
էլեկտրաէներգիա, 309 միլիոն տոննա նավթ, 173 միլիարդ խմ գազ, 107 միլիոն
տոննա պողպատ, 85 միլիոն տոննա գլանվածք, ավելի քան 42 միլիոն տոննա
հանքային պարարտանյութ, 805 հազար ավտոմեքենա, 444 հազար տրակտոր,
4 միլիոն տոննա թուղթ: Սովետական հայրենիքի գալիք տարվա այս հոյակապ

ցուցանիշները մեր աշխատավորության անձնվեր ջանքերով կգերազանցվեն նախորդ տարիների պես, որովհետև իրենց բախտը գիտակցաբար կռող սովետական քաղաքացիների արարչագործ կորովն անսպառ է: Այդ կորովի շնորհիվ է, որ մենք այժմ հասել ենք անօրինակ բարձունքների, նվաճում ենք տիեզերքի անհունները:

ՍՍՀՄ Գերագույն սովետի սեսիայի հաստատած օրենքի համաձայն՝ 1970 թ. մեր երկիրը 300 միլիարդ կվտ-ժամ ավելի էլեկտրաէներգիա կստանա, քան 1965 թվականին: Մի շարք խոշորագույն էլեկտրակայանների գործարկմամբ հնարավոր կդառնա նշանակալի չափով բարձրացնելու արդյունաբերական աշխատանքի էլեկտրազինվածությունը, ավելացնելու գյուղատնտեսության էլեկտրաէներգիայի սպառման ծավալը, կոմունալ կենցաղային կարիքների բավարարման նպատակով հնարավոր կլինի գործադրել ավելի մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա: Երկրի վառելիքային հաշվեկշռի բարելավման նպատակով նախատեսվում է գալիք երեք տարիներին հուժկու թափով առաջ մղել նավթի ու գազի հանույթը. 1970 թվականին նավթը կավելանա 107 մլն տոննայով, իսկ գազը 86 մլրդ խմ կգերազանցի 1965 թվականի հանույթը:

Տնտեսության բոլոր ճյուղերի ընդլայնված վերարտադրության բարձր տեմպերն ապահովելու նպատակով, շարունակվելու է մեծ մասշտաբներով կապիտալ ներդրումների կուրսը: Առաջիկա երեք տարիների ժողտնտեսության պլանի համաձայն, այս հնգամյակում կապիտալ ներդրումների գումարը կազմելու է 303,2 միլիարդ ռուբլի: Միայն 1968 թվականին կապիտալ ներդրումների (բոլոր աղբյուրներից) գումարը կազմելու է 59,6 միլիարդ ռուբլի, անցյալ տարվանից 5,7 տոկոսով ավելի: Գալիք երեք տարիներում կոմունալ և բնակարանային շինարարության, լուսավորության, առողջապահության, կուլտուրայի, գիտության օբյեկտների կառուցման վրա ծախսվելու է 78 միլիարդ ռուբլի: Այստեղից հետևում է, որ ժողովրդի բարօրության ու լուսավորության վրա ծախսվող այդ հսկայական գումարը գալիս է մեծապես նպաստելու աշխատավորության բարեկեցության բարձրացմանը և հնարավորություն ընձեռելու ավելի արդյունավետ օգտագործելու երկրի արտադրաուժերը, ինչպես և ավելի հուժկու թափով բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը:

Այն հսկայական շինարարությունը, այն բոլոր միջոցառումները, որոնք բազմապիսի ձևերով իրենց մարմնացումն են գտել նոր հնգամյա պլանում, արտահայտում են մեր կուսակցության ու կառավարության գլխավոր նպատակը՝ օրավուր բարձրացնել սովետական ժողովրդի կենսամակարդակը, լիակատար նախապայմաններ ստեղծել նրա հոգևոր բոլոր կարողությունների բուռն ծաղկման համար, դուրս մղել հասարակական կյանքի բոլոր ոլորտներից կարիքի հետքերը:

Սոցիալիստական բուռն շինարարության ընթացքով աչքի է զարնում սովետական Հայաստանը: Ինչպես նշվեց Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի վերջին սեսիայում, 1966—1967 թվականներին հանրապետության ազգային եկամուտն աճել է 9,1 տոկոսով, իսկ հիմնական ֆոնդերը երկու տարում ավելացել են 840 միլիոն ռուբլով: Բավական է ասել, որ միայն այս տարվա անցած 9 ամիսներում հանրապետության արդյունաբերական արտադրանքն աճել է 15,1 տոկոսով (նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատ): Անցյալ տարվա 4,4 տոկոսի փոխարեն, աշխատանքի արտադրողականությունն այս տարի աճելու է 6 տոկոսով:

Գոհունակությամբ պետք է նշել, որ Հայաստանի այս հնգամյակի աճի տա-



րեկան միջին տեմպը (որը բարձր է միութենական միջինից) կազմելու է 12,8 տոկոս: Ընթացիկ հնգամյակի առանձնահատկությունն այն է, որ սահմանված պլանների հաջող կենսագործումը հնարավորություններ կստեղծի նշանակալի չափով բարձրացնելու հանրապետության աշխատավորների կենսամակարդակը:

Գալիք երեք տարիներում պետական ֆինանսավորմամբ հանրապետությունում կատարվելիք կապիտալ շինարարության նպատակով կծախսվի ավելի քան մեկ միլիարդ 300 միլիոն ռուբլի, որից 535 միլիոնն առաջիկա տարում:

Որքան հոյակապ ու ոգևորիչ են հնգամյակի զարգացման հիմնական ցուցանիշները, նույնքան և բարդ ու պարտավորեցուցիչ են նրանցից բխող մեր անելիքները, որոնց ճիշտ կատարմամբ ավելի քան կճոխանա մեր հայրենիքի նվաճումների քարտեզը:

Ինչպես միութենական, նմանապես և հանրապետական ընթացիկ հնգամյակի հոյակապ խնդիրները պահանջում են ուժերի գերագույն լարում և տնտեսության բոլոր ճյուղերի կառավարման մեթոդների ու եղանակների առավելագույն կատարելագործում: Այստեղից հետևում է, որ կուսակցական կազմակերպությունները հետևողականորեն իրագործելով իրենց վերահսկողության ֆունկցիան, պետք է ձգտեն ամենուր ճշտությամբ կիրառելու տնտեսական ռեֆորմի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի ու կառավարության կողմից մշակած որոշումներն ու հրահանգները:

Նախ և առաջ պետք է ստուգել և կրկին ստուգել, որպեսզի կազմված և կազմվելիք պլանները իսկապես վերծ լինեն սուբյեկտիվիզմի տարրերից, ելնեն մարքսիստական տնտեսագիտության օրենքների խոր իմացությունից, ճիշտ արտացոլեն գոյություն ունեցող ռեզերվներն ու ձեռնարկության նորմալ գործառնության համար անհրաժեշտ մնացյալ գործոնները:

Այս հնգամյակում շինանյութերի արտադրությունը Հայաստանում իրոք կմեծանա 1,9 անգամ, անցած հնգամյակի 1,8-ի փոխարեն: Նման հզոր կառու- ցողական բազայի ստեղծումով հնարավոր կլինի արագորեն ծավալելու հանրա- պետության հարյուրավոր նոր ձեռնարկությունների և կուլտուր-կենցաղային բազմաթիվ հաստատությունների շինարարությունը, ժամանակին գործարկելու այնպիսի մի հսկա, որպիսին Հրազդանի քիմիական կոմբինատն է, որի ցեմենտի գործարանը տարեկան արտադրելու է մեկ և կես միլիոն տոննա ցեմենտ, Արարատի ներկա գործարանի 660 հազար տոննայի դիմաց: Այսպիսի աճման տեմպեր անհայտ են կապիտալիստական որևէ երկրի:

Արթիկի, Լենինականի, Պեմզաշենի տուֆաբլոկների և Հոկտեմբերյանի, Ջերմուկի ապակու տարայի, Արվնու տեսակային սալաքի ու բյուրեղյա արտադրանքների նոր գործարանի շինարարությունը խոսում են այն մասին, որ կիրառված նորագույն տեխնիկայով և կառուցող վարպետ կադրերով, հանրապետու- թյունն ի վիճակի կլինի պատվով կատարելու նոր հնգամյակի կառուցումների մեծ առաջադրանքները:

Շինարար Հայաստանի համար այժմ մի հուշ է դարձել 1913 թվականին գործող պստլիկ էլեկտրակայանների ընդամենը 31000 կվտ-ժամ կարողությու- նը. միայն Սևան կասկադի կայանների հզորությունը սոցիալիզմի կառուցման տարիներին հասավ 560 հազար կվտ-ժամի: Որոտանի կասկադի հզորությունը կազմում է 400 հազար կվտ-ժամ: Իսկ այժմ գործող հանրապետության ջերմա- էլեկտրակայաններն ունեն 700 հազար կվտ-ժամ կարողություն: Հանրապետու- թյան հզոր մեքենաշինությունն իր 90 ձեռնարկություններով կազմում է մեր ժո- ղովրդի հպարտության առարկան: Միայն Լենինի անվան էլեկտրամեքենաշի-

նական գործարանն ունի 11 հազար աշխատողներ, որն ավելի քան երկու անգամ գերազանցում է նախասովետական Հայաստանի բանվոր դասակարգի թվին:

Ահա թե որպիսի՜ հզոր թափով է զարգանում մեր հայրենիքը: Ահա թե որտեղ է մարմնավորված մեր բանվորների, կոլտնտեսականների, ծառայողների ու մտավորականների թափած ազնիվ աշխատանքն ու քրտինքը: Սովետական իշխանության տարիներին Հայաստանում վեր բարձրացող 23 քաղաքներում և 27 քաղաքատիպ բնակավայրերում այժմ աշխատում են 240 հազար բանվորներ ու ծառայողներ: Սա երազ չէ, այլ սովետական առօրյա իրականություն, մի իրականություն, որը հնգամյակից-հնգամյակ ավելի վառ ու գեղեցիկ, ավելի ճոխ ու հարուստ է դառնում:

Անցնելով տնտեսական նոր սիստեմին, ձեռնարկությունների կառավարումն անհամեմատ բարդանում է և պետք է ասել՝ դժվարանում: Շահույթով աշխատելը պահանջում է տնտեսավարներից, որպեսզի նրանք կարողանան արտադրության բոլոր պրոցեսները հմտորեն շաղկապել միմյանց հետ, ճշգրտորեն հաշվի առնեն արտադրական յուրաքանչյուր միավորի ծախսերը: Սա ամենից առաջ վերաբերում է այն բանին, որպեսզի պլանային օրգանները ճշտորեն բաշխեն հանրապետության արտադրաուժերը, առանց որի հնարավոր չի լինի առավելագույն չափով օգտագործելու երկրի բնական ու հասարակական աղբյուրները: Առանց դրա հնարավոր չէ ուժերի և միջոցների նվազագույն վատնումով, առավելագույն արդյունքի հասնել:

Հնգամյակի կարևորագույն խնդիրները լուծելիս, կուսակցական և պետական մարմինները չպետք է աչքաթող անեն մի կարևոր հանգամանք. ձեռնարկության կառուցումն ու շահագործումը որևէ չափով չպետք է հասարակությանը զրկի բնության օգտակար գործոններից և նրա բարիքներից, բարիքներ, որոնք այնքան անհրաժեշտ են մեր հասարակության նորմալ կյանքի համար: Գետերի, լճերի, ջրերի, հանքերի, անտառների և հողամասերի օգտագործումը պահանջում է բնության ուժերի ու հրաշալիքների խնայողաբար օգտագործումը՝ հօգուտ ներկա և գալիք սերունդների: Համապետական նշանակություն ունեցող այս պրոբլեմը ոչ ոք իրավունք չունի աչքաթող անելու, երբ ծրագրում է որևէ տնտեսական կամ կուլտուրական սխրագործություն:

Առաջիկա տարիներում նախատեսված շինարարական օբյեկտների տեղադրավայրը որոշելիս, պետական պլանային օրգանները պարտավոր են հոգալ ոչ միայն այսօրվա բնակիչների, այլև վաղվա մարդկանց առողջական վիճակի համար: Այս մասին բազմիցս խոսվել է կուսակցական և պետական կազմակերպություններում և հաստատություններում, ինչպես և մեր մամուլի օրգաններում: Համապետական այս խնդրի լուծումը լիակատար հնարավոր է մեր ունեցած նյութատեխնիկական միջոցներով:

Հայտնի է որ գալիք տարում հիմնականում կավարտվի արդյունաբերական ձեռնարկությունների անցումը նոր տնտեսավարման սիստեմին, մի հանգամանք, որը պահանջում է տնտեսավարներից կիրառել պլանավորման ու կոորդինացման այնպիսի գիտական մեթոդներ, որոնց գործադրումով առավելագույն շահավետությամբ առաջ ընթանան սովետական տնտեսության բոլոր օղակները: Այստեղից սակայն ծագում է հրատապ մի խնդիր՝ ժամանակակից գիտելիքներով, աշխատանքի գիտական կազմակերպման առաջավոր մեթոդների իմացությամբ վերազինել այն ընկերներին, որոնք կոչված են տնտեսություն վարել, որպեսզի նրանք ի վիճակի լինեն արդի բարդ մեքենաների օգնությամբ հաջող կառավարելու արտադրական ու վարչական կյանքի բարդ պրոցեսները:



Հանրապետության տնտեսության ղեկավարման առջև ծառացել են որքան
կենսական, նույնքան և դժվարալույծ խնդիրներ, որոնց ճիշտ ու ժամանակին
մշակումը կորոշի հնգամյա պլանի կատարման բախտը: Ճշտորեն զուգակցել
կենտրոնացված պլանային ղեկավարումը տնտեսավարման համարձակ նախա-
ձեռնության հետ, հիշելով, որ ձեռնարկության ինքնուրույն գործունեության
համար անհրաժեշտ է ունենալ պատշաճ նյութատեխնիկական ու ֆինանսական
նախադրյալներ: Արտադրության կառավարման մեթոդների հետագա կատարելա-
գործման համընթաց, անհրաժեշտ է ավելի բարձր մակարդակի վրա դնել գոր-
ծարանների, ֆաբրիկաների, նորակառույցների, սովխոզների ու կոլտնտեսու-
թյունների տնտեսական պլանավորման և նրանց թողարկած արտադրանքի հա-
ջող իրացման գործը: Սրանք հարցեր են, որոնք հար և անընդհատ ծագում են
կյանքից, երկրի զարգացման արդեն անցած փուլից, հարցեր, որոնք հրամա-
յական լուծում են պահանջում:

Գաղտնիք չէ, որ տնտեսական ռեֆորմի մեծագույն նպատակը հանգում է
աշխատանքի արտադրողականության ու երկրի նյութա-տեխնիկական, կուլ-
տուր-ինտելեկտուալ ընդհանուր մակարդակի ավելի արագ բարձրացմանը: Այս
երկու արմատական պրոբլեմների հաջող լուծումը ոչ միայն ենթադրում է աշ-
խատանքի բոլոր պրոցեսների գիտական կազմակերպում, այլև մարդկանց աշ-
խատանքային րոպեների իրոք արդյունավետ ծախսում: Ոչ միայն արտադրա-
նյութի ու միջոցների ռիթմիկ հայթայթում, այլև արտադրանքի միավորի ինքնար-
ժեքի կորագծի մշտական վայրէջք: Ոչ միայն ոչ արտադրական ծախքերի սիս-
տեմատիկ կրճատում, այլև սովետական կոլեկների իրական խնայում, սպառող-
ների պահանջմունքների կատարյալ իմացում և բոլոր աշխատողների անձնա-
կան շահագրգռվածության խրախուսում: Միայն արտադրության վարման բարդ
արվեստի իրական տիրապետմամբ հնարավոր կլինի տնտեսությունը կառավա-
րել շահութաբերության սկզբունքով և նորմալ կերպով ապահովել ֆոնդահա-
տույցը:

Նոր հնգամյա պլանը բոլոր կուսակցական կազմակերպությունների ու մար-
մինների առջև հարուցում է մի գլխավոր և լուծելի հարց: Դա մասսաների ղե-
կավարման արվեստի օրավուր զարգացումն է, մի արվեստ, որը բացառում է
տնտեսավարների ֆունկցիաների որևէ խախտում, որը ենթադրում է ոչ միայն
տնտեսագիտության օրենքների խոր ու կոնկրետ իմացություն, ոչ միայն աշխա-
տողների մտորումների, ստեղծագործական ձգտումների և հոգեբանության պո-
տենցիալ կարողությունների հստատ ճանաչում, այլև կազմակերպական ձիրք
ու մարդկանց ոգևորելու, բայց ավելի քան համոզելու հոգեկան կորով: Այո՛,
նոր հնգամյակը պահանջում է ղեկավարման ավելի բարձր մակարդակ, վար-
չարարությունից, շաբլոնից ու մակերեսայնությունից վերծ, տնտեսավարման հե-
ղինակավոր և համոզիչ ոճ:

Վեր է կասկածից, որ Հայաստանի աշխատավորներն ինչպես միշտ, այս
դեպքում ևս կգերակատարեն նոր հնգամյա պլանի բոլոր առաջադրանքները և
նոր փառքով կպսակեն իրենց վեհ աշխատանքի սխրանքներն ի փառս սովետա-
կան մեծ հայրենիքի:

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԾԱԳՈՒՄԸ

Խ. ՀԱԿՈԲՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ

Դեմոկրատիան, ինչպես և քաղաքական վերնաշենքի ամեն մի ցանկացած ձև, վերջին հաշվով պայմանավորված է հասարակության տնտեսական կառուցվածքով, իսկ նրա սոցիալական բնույթը, բովանդակությունն ու ֆունկցիաները կախված են արտադրական հարաբերությունների բնույթից։ «Ամեն մի դեմոկրատիա,— գրում էր Վ. Ի. Լենինը,— ինչպես և ամեն մի քաղաքական վերնաշենք ընդհանրապես...վերջին հաշվով ծառայում է արտադրությանը, և, վերջին հաշվով, որոշվում է տվյալ հասարակության արտադրահարաբերություններով» (Երկեր, հ. 32, էջ 85)։ Այդ նշանակում է, որ դեմոկրատիային պետք է մոտենալ կոնկրետ, պատմականորեն, տեսնել նրա դասակարգային բնույթը, սոցիալական վերափոխումների մեջ նրա խաղացած դերը։

Ֆեոդալական դեսպոտիզմի և կամայականության դեմ պայքարելիս բուրժուազիան հռչակեց ազատության, հավասարության և եղբայրության դեմոկրատական սկզբունքները։ Սակայն, ինչպես ցույց տվեց պատմությունը, այդ լոզունգները կրում էին ձևական բնույթ և աշխատավորները փաստորեն չկարողացան օգտվել հռչակված իրավունքներից ու ազատություններից։ Ավելին, բուրժուական պետությունները քայլ առ քայլ հրաժարվեցին նույնիսկ նվաճված դեմոկրատիայի ավանդական ինստիտուտներից, իսկ վերոհիշյալ լոզունգները դարձան դեմագոգիայի և աշխատավորներին խաբելու միջոցներ։

Կապիտալիզմը, որպես արտադրամիջոցների մասնավոր սեփականությամբ պայմանավորված անտագոնիստական հասարակություն, ծայր աստիճանի հասցնելով ճնշումն ու շահագործումը, միաժամանակ աշխատավորներին զրկում է իրենց տարրական իրավունքներից, սեղմում, ճմլում է դեմոկրատիան։ «Կապիտալիզմի ժամանակ,— գրում էր Լենինը,— դեմոկրատիզմը սեղմված է, ճզմված, խուզված, այլանդակված՝ մասսաների վարձու ստրկության, կարիքի և աղքատության ամբողջ իրադրությամբ» (Երկեր, հատ. 25, էջ 635)։

Բուրժուական հասարակարգի բյուրոկրատիզմն առանձնահատուկ ուժով



է դրսևորվում իմպերիալիզմի դարաշրջանում, երբ տեղի է ունենում պետա-
կան ապարատի և մոնոպոլիաների միաձուլում։ Մոնոպոլիստական կապի-
տալիզմն իր շոշափուկները տարածելով տնտեսական, քաղաքական, սոցիա-
լական, հոգևոր կյանքի բոլոր ոլորտները, ամբողջովին իրեն ենթարկելով քա-
ղաքական իշխանությունը, բացառապես իր շահերին է ծառայեցնում բուր-
ժուական դեմոկրատիայի ողջ սիստեմը։ Կապիտալիստական շատ երկրներում
բացահայտ ու գաղտնի միջոցներով, ռասայական, ունեցվածքային, կրթա-
կան, նստակեցության և բազմաթիվ այլ ցենզերով միլիոնավոր մարդկանց
զրկում են ընտրական իրավունքից, նրանց հեռու են պահում երկրի քաղաքա-
կան կյանքին ակտիվ մասնակցությունից։

Մոնոպոլիստական կապիտալիզմը սահմանում է պատմության մեջ
չտեսնված ռեակցիոն քաղաքական ռեժիմ, որը հենվում է բացառապես բա-
նակի և ոստիկանության վրա։ Ավելին, զարգացման վերջին ստադիայում
կապիտալիզմը լիակատար մոնոպոլիայի է ենթարկում նաև հասարակական-
քաղաքական կազմակերպությունները, չինովնիկական ողջ ապարատը։ Վեր-
ջին հաշվով, ստեղծվում է մի այնպիսի վիճակ, որ պետությունը բուրժուա-
զիայի ամբողջ դասակարգի ընդհանուր գործերի կառավարման կոմիտեից
վեր է ածվում մոնոպոլիստական բուրժուազիայի գործերի կառավարման
կոմիտեի։

Դեմոկրատիայի մասին դատում են ոչ թե նրա հռչակած լոզունգներով,
այլ ամենից առաջ այն բանով, թե գործնականում այն ինչ է տալիս աշխա-
տավորներին։ Վ. Ի. Լենինն ամենայն որոշակիությամբ ընդգծում էր, որ դե-
մոկրատիան ռեալ է դառնում միայն պետական իշխանությունը բանվոր դա-
սակարգի ձեռքն անցնելուց հետո, որ պրոլետարիատի դիկտատուրան է միակ
քայլը դեպի հավասարություն և դեմոկրատիա՝ գործնականում և ոչ թղթի
վրա։

Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ միայն շահագործումից և ճըն-
շումից մասսաների ազատագրումն է պայմաններ ստեղծում իսկական ազա-
տության ու դեմոկրատիայի համար։ Պատմական այդ խնդրի լուծումն, ինչ-
պես ցույց տվեց պրակտիկան, կապված է սոցիալիզմին անցնելու հետ։

Սոցիալիստական դեմոկրատիայի կազմավորման պրոցեսը չափազանց
բարդ է։ Հենց բուն պրոլետարական, սոցիալիստական հեղափոխությունն
իրենից ներկայացնում է դեմոկրատական մեծագույն ակտ։ Այստեղ դրսևոր-
վում են միլիոնների մասսայական հեղափոխական գործողությունները, որոնք
փշրում են իշխանությունը ժողովրդի մեծամասնության ձեռքն անցնելուն
խոչընդոտող բոլոր պատնեշները։

Լիակատար դեմոկրատիայի ստեղծման պրոցեսը սկսվեց Հոկտեմբեր-
յան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակով և մեր երկրում
սոցիալիզմի շինարարության ընթացքում ապրեց իր զարգացման ու ծաղկման
մի շարք էտապներ։

Սոցիալիստական դեմոկրատիան առաջին քայլերից իսկ դրսևորեց իր
գերազանցությունը վաղուց իր դարն ապրած բուրժուական դեմոկրատիա-
յի հանդեպ։ Այն համախմբեց պրոլետարիատին, աշխատավորությանը բուր-
ժուական պետական մեքենան լիկվիդացնելու, աշխատավորական լայն մաս-
սաների հեղափոխական կազմակերպություն ստեղծելու համար։ Պետական
իշխանությունն անցնելով աշխատավորության ձեռքը, օգտագործվեց ունե-
զրկողներին ունեզրկելու, մարդու կողմից մարդու շահագործումը լիկվիդաց-

նելու համար: Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, բանվոր դասակարգի առաջատար դերի պայմաններում իրագործվող սոցիալիստական շինարարությունը կյանքի կոչեց հասարակական զարգացման նոր օրինաչափություններ, հասարակական նոր հարաբերություններ: Սոցիալիստական սեփականության հիմքի վրա ամրապնդվեց հասարակության իրավահավասար ու ազատ անդամների բարեկամական համագործակցությունը, կազմավորվեց և խորացավ սովետական ազգերի եղբայրական բարեկամությունը:

Սոցիալիստական հասարակության քաղաքական կազմակերպության զարգացման արդեն առաջին էտապը բնութագրվում է հասարակական կյանքի բոլոր բնագավառներում դեմոկրատական հիմունքների հետևողական հաստատմամբ, աշխատավորներին լայն իրավունքներ և ազատություն ընձեռելով, պետական օրգանների առավել դեմոկրատական կազմակերպմամբ: Դեռևս 1919 թվականին Վ. Ի. Լենինը գրում էր, որ ոչ թե թղթային, այլ իրական դեմոկրատիայի համար մենք արեցինք այնքան, որքան չեն արել և չէին էլ կարող անել նույնիսկ ամենալավագույն դեմոկրատական հանրապետությունները հարյուրավոր տարիների ընթացքում:

Հասկանալի է, իհարկե, որ հեղափոխությունից հետո երկրում կապիտալիստական էլեմենտների առկայության, գյուղում մանր ապրանքային տնտեսության տիրապետության, ազգաբնակչության կյանքի պայմանների ցածր մակարդակի, և մի շարք այլ հանգամանքների ուժով սոցիալիստական դեմոկրատիան չէր կարող ստանալ բազմակողմանի զարգացում, չէր կարող դառնալ համընդհանուր: Պետական գործերին աշխատավորների համընդհանուր մասնակցությանը խոչընդոտում էր և նրանց կուլտուրական ցածր մակարդակը: Լենինն ընդգծում էր, որ բացի օրենքից կա նաև կուլտուրական մակարդակ, որը ոչ մի օրենքի չես ենթարկի:

Սոցիալիզմի առաջընթացի հետ մեկտեղ, պրոլետարական, սոցիալիստական դեմոկրատիան անընդհատ խորացավ և կատարելագործվեց: Նրա զարգացման գլխավոր տենդենցը տնտեսության ամրապնդմանը, ժողովրդի կուլտուրական մակարդակի բարձրացմանը զուգընթաց, պետական գործերի կառավարմանը բնակչության մասնակցության անընդհատ աճն էր, սովետական քաղաքացիների իրավունքների և ազատությունների անշեղ ընդլայնումը:

Սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումը, նրա ծաղկումը, սակայն, տեղի չէր ունենում առանց պայքարի, հարթ ու խաղաղ ճանապարհով: Կապիտալիզմից կոմունիզմին անցման ժամանակաշրջանը բարդ ու դաժան պայքարի ժամանակաշրջան է: «Անցման այդ ժամանակաշրջանը,— գրում էր Վ. Ի. Լենինը,— չի կարող պայքարի ժամանակաշրջան չլինել մեռնող կապիտալիզմի և ծնվող կոմունիզմի միջև, կամ, այլ խոսքով՝ պարտված, բայց չոչնչացված կապիտալիզմի և ծնված, բայց դեռ բոլորովին թույլ կոմունիզմի միջև» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 30, էջ 115):

Պրոլետարական նորաստեղծ պետության առաջ կանգնած էին բարդ ու բազմակողմանի խնդիրներ: Ամենից առաջ անհրաժեշտ էր լիկվիդացնել կապիտալիստական մասնավոր սեփականությունը և հաստատել արտադրության միջոցների հանրային սեփականություն, իրագործել երկրի սոցիալիստական ինդուստրացումն ու գյուղատնտեսության կոոպերացումը, կուլտուրական հեղափոխությունը, բարձրացնել աշխատավորության կյանքի մակարդակը: Այդ խնդիրները կենսագործելու համար անհրաժեշտ էր ամրապնդել բանվոր դասակարգի դաշինքը գյուղացիության և աշխատավորության մյուս խավերի



հետ, ժողովուրդների միջև հաստատել իրավահավասարության և եղբայրական բարեկամության հարաբերություններ, ամրապնդել բանվոր դասակարգի համագործակցությունը մյուս երկրների բանվոր դասակարգի հետ:

Սովետական ժողովուրդը, կոմունիստական կուսակցության հմուտ ղեկավարությամբ, դիմանալով պատմության ահեղ փորձություններին, հաղթահարելով անասելի դժվարություններ ու զրկանքներ, պատվով կատարեց իր առջև կանգնած համաշխարհային պատմական խնդիրները:

Սոցիալիզմը լուծեց սոցիալական մեծագույն պրոբլեմը՝ վերացրեց շահագործող դասակարգերի և մարդու կողմից մարդու շահագործում ծնող պատճառները: ՍՍՀՄ-ում մնացին երկու բարեկամ դասակարգեր՝ բանվոր դասակարգը և գյուղացիությունը: Ընդ որում, փոխվեցին նաև հենց իրենք՝ այդ դասակարգերը: Սոցիալիստական սեփականության երկու ձևերի ընդհանրությունն իրար մոտեցրեց բանվոր դասակարգին ու կոլտնտեսային գյուղացիությանը, ամրացրեց նրանց դաշինքը, անխախտ դարձրեց նրանց բարեկամությունը: Աճեց ժողովրդի ծոցից ելած և սոցիալիզմին նվիրված նոր ինտելիգենցիա: Վերացվեց քաղաքի և գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած երբեմնի հակադրությունը: Բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի արմատական շահերի ընդհանրության բազայի վրա ստեղծվեց սովետական ժողովրդի սոցիալ-քաղաքական ու գաղափարական անխախտ միասնություն:

1936 թվականի ՍՍՀՄ Սահմանադրությունն ամրապնդեց մեր երկրում սոցիալիզմի հաղթանակը, իրենով նշանավորեց համընդհանուր դեմոկրատիայի կարևորագույն սկզբունքների ծավալումը, դեմոկրատիայի հետագա ծավալման հնարավորությունների ստեղծումը:

Սովետական սոցիալիստական դեմոկրատիան բազմակողմանի սոցիալական երևույթ է: Այն ընդգրկում է հասարակական կյանքի ինչպես քաղաքական, այնպես և տնտեսական ու հոգևոր բնագավառները: Վ. Ի. Լենինը սովետական դեմոկրատիզմը բնութագրում է որպես ժողովրդի ձեռքում քաղաքական ու տնտեսական իշխանության միավորում: Մեր դեմոկրատիայի գլխավոր առանձնահատկությունը ոչ միայն այն է, որ լայն մասսաները ընտրում են պետական իշխանության օրգանները: Այս կամ այն ձևով, այս կամ այն չափով աշխատավորների մասնակցությունը ընտրություններին հատուկ է նաև բուրժուա-դեմոկրատական պետություններին: Սակայն միայն սոցիալիստական դեմոկրատիզմի պայմաններում է, որ ժողովուրդն անմիջականորեն կամ իր ներկայացուցիչների միջոցով մասնակցում է քաղաքական կարևորագույն հարցերի լուծմանը, որպես լիակատար տեր ինքն է տնօրինում իր ազգային հարստությունը: Ժողովրդի այդպիսի դերը պայմանավորված է բացառապես տնտեսության սոցիալիստական սիստեմով, որտեղ արտադրության հիմնական միջոցները հանրային սեփականություն են:

Սոցիալիստական էկոնոմիկայի կառավարման գործում աշխատավորության մասնակցությունը դրսևորվում է բազմաթիվ ձևերով՝ սկսած ժողովրդական տնտեսության պլանավորման հարցերի քննարկումից, սոցիալիստական մրցությունից և վերջացրած մշտապես գործող արտադրական խորհրդակցություններով:

Սովետական դեմոկրատիայի բովանդակությունը որոշվում է սոցիալիստական հասարակարգի զարգացման օբյեկտիվ օրինաչափություններով: Այդպիսի ամենաընդհանուր օրինաչափություններից մեկն էլ հասարակու-

*թյան գործերի կառավարմանը մասսաների մասնակցության ընդլայնումն է, դեմոկրատիայի անշեղ խորացումը։ Եթե կապիտալիզմից սոցիալիզմին անցման շրջանում սովետական դեմոկրատիայից բացառվում էր բնակչության փոքրամասնությունը՝ շահագործողները և նրանց արբանյակները, ապա սոցիալիզմի լիակատար և վերջնական հաղթանակից հետո սովետական դեմոկրատիան դարձավ համաժողովրդական։ Սովետական հասարակարգի սոցիալ-տնտեսական խոր վերափոխումներով, ՍՍՀՄ-ում կուլտուրական հեղափոխության հաջողություններով նոր հնարավորություններ ստեղծվեցին սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ծավալման համար։*

*Ընդլայնվեցին սովետական ընտրական սիստեմի դեմոկրատական սկզբունքները, ընտրովի օրգանների և, առաջին հերթին, հանրապետական ու տեղական սովետների իրավունքները, սովետական, առանց բացառության, բոլոր քաղաքացիները հնարավորություն ստացան ակտիվորեն մասնակցելու երկրի կառավարմանը։*

*«Սոցիալիստական հեղափոխության ծնունդ պրոլետարիատի դիկտատուրան,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— համաշխարհային պատմական դեր խաղաց, ապահովելով սոցիալիզմի հաղթանակը ՍՍՀՄ-ում։ Միևնույն ժամանակ սոցիալիզմի կառուցման պրոցեսում նա ինքը փոփոխություն կրեց։ Շահագործող դասակարգերի վերացման կապակցությամբ մահացավ նրանց դիմադրությունը ճնշելու ֆունկցիան։ Բազմակողմանի զարգացում ստացան սոցիալիստական պետության գլխավոր ֆունկցիաները՝ տնտեսական-կազմակերպչական և կուլտուր-դաստիարակչական ֆունկցիաները։ Սոցիալիստական պետությունը թևակոխեց իր զարգացման նոր ժամանակաշրջանը։ Սկսվեց պետությունը սոցիալիստական հասարակարգի աշխատավորների համաժողովրդական կազմակերպության վերաճելու պրոցեսը։ Պրոլետարական դեմոկրատիան ավելի ու ավելի էր վերածվում համաժողովրդական սոցիալիստական դեմոկրատիայի* (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, էջ 522, *Հայպետհրատ, 1962 թ.)։*

*Դրա հետ մեկտեղ ՍՄԿԿ ծրագիրը նախատեսում է սոցիալիստական պետականության հետագա ամրապնդում։ Այդ արտահայտվում է ամենից առաջ դեպուտատների սովետների գործունեության բարելավման ու կատարելագործման, պետական կարգապահության և օրինականության ամրապնդման, պաշտոնատար անձանց և քաղաքացիների՝ իրենց հանձնարարված գործի նկատմամբ պատասխանատվության զգացումի բարձրացման մեջ և այլն։*

*Այս կապակցությամբ չի կարելի համաձայնվել այն ընկերների հետ, ովքեր սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումը միակողմանիորեն հանգեցնում են նրա ինքնագործ ձևերին և երբեմն հասարակական կազմակերպությունները հակադրում են պետականին։ Որոշ ընկերների մոտ տարածված է այն կարծիքը, թե իբր կոմունիստական հասարակական ինքնավարության զարգացումը կհանգեցնի պետական ձևերի մեխանիկական փոխարինմանը հասարակականի, բաշխման, բնակչության սպասարկման, հասարակական կարգի պահպանման և մի շարք այլ բնագավառներում պետական ֆունկցիաների արագ փոխանցմանը հասարակական կազմակերպություններին։ Սա խորապես սխալ մտայնություն է։*

*Իհարկե, պետական օրգանների մի քանի ֆունկցիաների հանձնումը հասարակական կազմակերպություններին ունի մեծ նշանակություն, սակայն արդի պայմաններում դա չէ գլխավորը սոցիալիստական պետականության*



*զարգացման մեջ։ Հայտնի է, օրինակ, որ սոցիալիստական արտադրաեղանակի պայմաններում հասարակության և պետության խստագույն հսկողությունը աշխատանքի և սպառման չափի վրա օբյեկտիվ անհրաժեշտություն է։ Հասարակական կազմակերպություններն այստեղ ակտիվ մասնակցություն ունեն, սակայն միայն ու միայն պետության առաջատար դերի պահպանումով։ Կյանքը ցույց է տալիս, որ հասարակական ինքնավարության բոլոր ձևերի զարգացումը տեղի է ունենում սոցիալիստական դեմոկրատիայի պետական ձևերի հետ սերտ զուգորդմամբ։*

*ՍՄԿԿ ծրագիրը, կուսակցության XXIII համագումարն արձանագրեցին, որ սովետական դեմոկրատիայի զարգացման պրոցեսում մեծ թափ են ստանում ժողովրդական մասսաների նախաձեռնությունն ու ինքնագործունեությունը՝ պետության կառավարման գործում, աճում է նրանց դերը պետական որոշումների ընդունման և դրանց կենսագործման բնագավառում։ Հենց սա էլ անմիջական դեմոկրատիան է, որը զարգանում է աշխատավորների դեպուտատների սովետների մեջ մարմնավորված ներկայացուցչական դեմոկրատիայի հետ սերտորեն միահյուսված։ Վ. Ի. Լենինը վիթխարի նշանակություն էր տալիս դեմոկրատիայի այդ ձևերի զարգացմանը, դրա մեջ տեսնելով սովետական սիստեմի մեծ առավելությունը։*

*Ներկայացուցչական դեմոկրատիային բնորոշ է դեմոկրատական ցենտրալիզմը։ Սակայն դեմոկրատիայի այս ձևը կարող է ունենալ և թերություններ. եթե ներկայացուցչական օրգանների և նրանց գործադիր ապարատի աշխատանքի նկատմամբ չի իրագործվում գործարար վերահսկողություն, ապա պետական սիստեմում կարող են երևան գալ ֆորմալիզմի, բյուրոկրատիզմի էլեմենտներ։ Միաժամանակ հայտնի է, թե կուսակցությունն ինչպիսի մեծ նշանակություն է տալիս արդի էտապում պետական ապարատի հստակ գործունեությանը։ «Սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի ծավալում ու կատարելագործում,— գրված է ՍՄԿԿ ծրագրում,— բոլոր քաղաքացիների ակտիվ մասնակցություն պետության կառավարմանը, տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարմանը, պետական ապարատի աշխատանքի բարելավում և նրա գործունեության նկատմամբ ժողովրդական վերահսկողության ուժեղացում՝ այս է սոցիալիստական պետականության զարգացման գլխավոր ուղղությունը կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում (XXII համ. նյութեր, էջ 523)։*

*Այդ նշանակում է, որ կուսակցությունը պետական ապարատի գործունեության բարելավման վճռական լծակներից մեկը տեսնում է անմիջական դեմոկրատիայի ծավալման, ներկայացուցչական օրգանների և նրանց գործադիր ապարատի աշխատանքի նկատմամբ ժողովրդական վերահսկողության իրագործման մեջ։ Թե ինչպիսի լայն ծավալ է ընդունել ժողովրդական վերահսկողությունը մեր կյանքի զանազան բնագավառներում, երևում է հետևյալ տվյալներից։ 1965 թվականի կեսերին ժողովրդական վերահսկողության օրգանների արտահաստիքային բաժինների, հանձնաժողովների, բյուրոների թիվը, ոչ լրիվ տվյալներով, հասավ 19000-ի, աշխատողների թիվը՝ 164000-ի, հսկող պոստերի և խմբերի թիվը՝ 770000-ի, իսկ աշխատողների թիվը՝ 4,300,000-ի։*

*Երկրի առջև կանգնած բազմակողմանի ու բարդ խնդիրները չէին կարող լուծվել առանց հասարակության գործերի կառավարմանը աշխատավոր հոծ զանգվածների ներգրավման։ Մեր երկրում ժողովրդապետությունը իր արտա-*

հայտությունը գտավ ամենից առաջ սովետներում, ժողովրդական ներկայա-
ցուցչության մարմիններում, որոնք իրենց մեջ զուգորդում են պետական ու
հասարակական կազմակերպությունների գծերը:

Սովետները ժողովրդի համընդհանուր և միասնական կազմակերպու-
թյուններն են, որոնք ներկայացնում են երկրի ամբողջ չափահաս բնակչու-
թյունը: Երկրում գործում են մոտ 50 հազար սովետներ: Հենց դրա համար էլ
աշխատավորների դեպուտատների սովետներում իր վառ մարմնավորումն է
գտնում մեր դեմոկրատիան, որպես ամենալայն ու ամենաներկայացուցչա-
կան: Բոլոր սովետներում ներկայումս հաշվվում է ավելի քան 2 միլիոն դե-
պուտատ, իսկ սովետների ակտիվն անցնում է 23 միլիոն մարդուց: Այդ ամե-
նի շնորհիվ սովետները կարողանում են լիովին արտահայտել բնակչության
բոլոր խավերի շահերն ու կամքը, մշտապես զգալ երկրի հասարակական-
քաղաքական կյանքի զարկերակը:

Սոցիալիստական դեմոկրատիայի սկզբունքների կատարելագործմանը
զուգընթաց աստիճանաբար մշտական հանձնաժողովների լուծմանն են
հանձնվում գործադիր օրգանների, վարչությունների և բաժինների իրավասու-
թյանը ենթակա մեծ թվով հարցեր: Պետական ապարատի գործունեության
նկատմամբ ծավալվում է ժողովրդական վերահսկողությունը, ընդլայնվում են
հասարակական հիմունքները վճարովի ապարատում:

Բազմաթիվ փաստերով կարելի է ցույց տալ, թե ինչպես զարգացման ար-
դի էտապում մեծ չափերով աճել է հասարակական կազմակերպությունների՝
արհմիությունների, կոմերիտմիության, կոոպերացիայի և հասարակական հի-
մունքներով գործող բազմաթիվ այլ կազմակերպությունների դերը ժողովրդա-
կան տնտեսության, աշխատավորների կոմունիստական դաստիարակության,
պետական կառավարման, սոցիալիստական օրինականության պահպանման և
շատ այլ բնագավառներում:

ՍՄԿԿ XXIII համագումարն ընդգծեց, որ ձեռնարկությունների իրավունք-
ների ընդլայնումը, տնտեսական խթանման հետևողական կիրառումը զգալի-
րեն բարձրացնում են արհմիությունների պատասխանատվությունը պետական
պլանի կատարման, մասսայական գյուտարարության և ռացիոնալիզատորա-
կան շարժման ծավալման համար: 80 միլիոնանոց այդ բանակի դերն ու նշա-
նակությունը էլ ավելի է մեծանում աշխատավորների ստեղծագործական ակ-
տիվությունը բարձրացնելու, նրանց արտադրության կառավարման մեջ ներ-
գրավելու, սոցիալիստական մրցությունը և կոմունիստական աշխատանքի
շարժումը կազմակերպելու և ուղղություն տալու ասպարեզում:

Մեծ չափերով աճել է 23 միլիոնանոց լենինյան կոմերիտմիության դե-
րը, ինչպես նաև հասարակական մյուս կազմակերպությունների նշանակու-
թյունը, որպես կոմունիստական շինարարության մեջ մասսաների ներգրավ-
ման, կոմունիստական դաստիարակության և հասարակական ինքնավարու-
թյան դպրոցների ձևերի:

Կոմունիզմի հաջող շինարարությունն անհնարին է առանց քաղաքացի-
ների դեմոկրատական իրավունքների և ազատությունների բազմակողմանի
զարգացման: Սոցիալիստական հեղափոխության հաղթանակը արմատապես
փոխեց ժողովրդի վերաբերմունքը պետության նկատմամբ: Պատմության նա-
խորդ դարաշրջաններում ժողովուրդն իրավացիորեն շահագործող դասակար-
գերի քաղաքական մեքենան դիտում էր որպես թշնամական ուժ, քանի որ
այն միշտ էլ հանդես է եկել իբրև մասսաներին ճնշելու և հարստահարելու



զենք: Միայն սոցիալիստական պետության երևան գալով աշխատավոր ժողո-
վուրդն այն ընդունեց որպես իր սեփական, ժողովրդական պետություն: Նման
վերաբերմունքն ավելի ուժեղացավ շահագործող դասակարգերի մնացուկների
վերացմամբ, պրոլետարիատի դիկտատուրայի աստիճանաբար համաժողո-
վրդական պետության վերածվելուն զուգընթաց: Սովետական պետությունը
բոլոր պայմաններն ստեղծում է անհատի բազմակողմանի ծաղկման համար,
նրան ընձեռում է դեմոկրատական լայն իրավունքներ ու ազատություններ:

Քաղաքացիներին տալով լայն իրավունքներ ու ազատություններ, սովե-
տական պետությունը միաժամանակ նրանց վրա դնում է համապատասխան
պարտականություններ: Մարքսը նկատում էր, որ չկա իրավունք առանց պար-
տականությունների, չկան պարտականություններ առանց իրավունքի: Սովե-
տական դեմոկրատիան քաղաքացիներին դաստիարակում է աշխատանքի,
հանրային ունեցվածքի նկատմամբ բարեխիղճ վերաբերմունքի ոգով, կար-
գապահությունը, սոցիալիստական օրինականությունը խստորեն պահպանելու
ոգով:

Սովետական հասարակարգի ղեկավար և ուղղություն տվող ուժը կոմու-
նիստական կուսակցությունն է: Կուսակցության այդ դերը ամրապնդված է
ՍՍՀՄ սահմանադրությամբ: Զինված մարքսիզմ-լենինիզմի ուսմունքով, ճա-
նաչելով հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքները, կուսակցու-
թյունը ղեկավարում է երկրի տնտեսական, քաղաքական ու հոգևոր ողջ
կյանքը:

Կուսակցության ամբողջ գործունեությունը ներծծված է անսահման հա-
վատով ժողովրդի նկատմամբ, նրա հեղափոխական, վերափոխիչ ուժի
նկատմամբ: Կուսակցության ուժը մասսաների հետ նրա անխզելի կապի մեջ
է: «Կուսակցությունը,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— գոյություն ունի ժո-
ղովրդի համար, նրան ծառայելու մեջ է տեսնում իր գործունեության ողջ
իմաստը, նրա ընդերքում է իմաստավորում ու մարմնավորում իրականու-
թյան բոլոր հարցերը»:

Կուսակցության գործունեությունը ապահովում է բանվոր դասակարգի և
գյուղացիության անխորտակելի դաշինքը, սովետական ազգերի եղբայրական
համագործակցությունն ու բարեկամությունը: Իր գործունեության մեջ կու-
սակցությունը ելնում է այն բանից, որ կոմունիզմի կառուցման գլխավոր
գործիքը սովետական պետությունն է: Նա անդուլ հոգատարություն է ցուցա-
բերում պետության հզորության ուժեղացման, սովետական դեմոկրատիզմի
սկզբունքների հետևողական կենսագործման, սոցիալիստական օրինակա-
նության պահպանման, պետական ապարատի աշխատանքի բարելավման ու կա-
տարելագործման նկատմամբ:

Հասարակության և պետության կուսակցական ղեկավարության իսկա-
կան դեմոկրատիզմը որոշվում է ամենից առաջ նրանով, որ հենց ինքը՝
ՍՄԿԿ-ն կառուցված է խոր դեմոկրատական հիմունքներով: Կուսակցությու-
նը ժողովրդին տալիս է գործունեության իսկական դեմոկրատական օրինակ-
ներ: Լինելով ժողովրդական մասսաների շահերի ու իղձերի արտահայտիչը, նա
հասարակական կյանքի կարևորագույն հարցերի շուրջը մշտապես խորհըր-
դակցում է ժողովրդի հետ, օգտագործում նրա իմաստությունը:

Զարգացման արդի էտապում սոցիալիստական դեմոկրատիան ապրում է
բուռն ծաղկման շրջան և մեր հասարակարգի առաջընթացի հետ մեկտեղ էլ
ավելի կկատարելագործվի ու կխորանա: ՍՄԿԿ ծրագրում ուղղակի նշված է,

որ սոցիալիստական պետականության զարգացումն աստիճանաբար կհանգեցնի այն բանին, որ նա կվերափոխվի հասարակական կոմունիստական ինքնավարության, որի մեջ կմիավորվեն սովետները, արհեստակցական, կոոպերատիվ և աշխատավորների մյուս մասսայական կազմակերպությունները։ Այդ պրոցեսը կնշանակի դեմոկրատիայի հետագա զարգացում, որը կապահովի հասարակության բոլոր անդամների ակտիվ մասնակցությունը հասարակական գործերի կառավարմանը։

Հոկտեմբերյան հեղափոխության 50-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի թեզիսներում նշված է, որ համաժողովրդական պետությունը սոցիալիստական պետականության հետագա զարգացումն է, որը հանգելու է հասարակական կոմունիստական ինքնավարության։ Համաժողովրդական պետությունը շարունակում է պրոլետարիատի դիկտատուրայի գործը՝ կոմունիզմի կառուցումը, մյուս սոցիալիստական պետությունների հետ համատեղ իմպերիալիզմի դեմ դասակարգային պայքար է մղում միջազգային ասպարեզում։ Հասարակական ինքնավարության ուղին անցնում է սոցիալիստական պետության և սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման և կատարելագործման միջով։ Դա առավել կոնկրետ արտահայտվում է աշխատավորների դեպուտատների սովետների դերը բարձրացնելու, նրանց գործունեության հասարակական սկզբունքները ուժեղացնելու, արտադրական, սոցիալական ու հոգևոր կյանքի հարցերը լուծելու գործում աշխատանքային կոլեկտիվների և հասարակական կազմակերպությունների դերը բարձրացնելու մեջ։

Կոմունիզմի կառուցումը, դեմոկրատիայի հետագա զարգացման տնտեսական, սոցիալական, հոգևոր և քաղաքական նախադրյալները ապահովում են հասարակության բոլոր անդամների աստիճանական ներգրավումը հասարակական գործերի կառավարման, տնտեսական ու կուլտուրական շինարարության ղեկավարման մեջ։ Այս պրոցեսն այսօր տեղի է ունենում իր ամբողջ խորությամբ ու լայնությամբ։

Անհրաժեշտ է ընդգծել, որ դեմոկրատիայի հետագա ծավալումը կախված է ոչ միայն մարդկանց միջև դասակարգային ու սոցիալական տարբերությունների վերացումից, այլև մեծ չափով պայմանավորված է նոր մարդու դաստիարակությամբ։ Երբ հասարակության բոլոր անդամները կլինեն մարքս-լենինյան աշխարհայացքով, խորապես կըմբռնեն հասարակության արմատական շահերը և կընտելանան «առանց բռնության ու առանց հպատակման կատարելու հասարակական տարրական պայմանները» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 25, էջ 593), բոլորը միասին կմասնակցեն հասարակական գործերի կառավարմանը, դեմոկրատիայի ողջ սիստեմի ֆունկցիաները կկատարվեն անվճար, հասարակական հիմունքներով։ Ահա այդ ժամանակ սոցիալիստական դեմոկրատիան կավարտի իր էվոլյուցիան և կվերածվի լիակատար դեմոկրատիայի։ «Միայն կոմունիզմը,— գրում է Լենինը,— կարող է իսկապես լիակատար դեմոկրատիա տալ»... (տես հատ. 25, էջ՝ 602)։

Այդ ժամանակ էլ քաղաքական դեմոկրատիան կավարտի իր զարգացման պատմությունը, կմահանա։ «Որքան ավելի լիակատար լինի այդ դեմոկրատիան, այնքան ավելի շատ անպետք կդառնա նա, ինքն իրեն կմահանա» (Լենին, հատ. 25, էջ 602)։ Դրանից այն կողմ կսկսվի ոչ քաղաքական դեմոկրատիայի՝ կոմունիստական հասարակական ինքնավարության ժամանակաշրջանը։

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Ա. ԱՂԱԲԱԲՈՎ

Հասարակության զարգացման գործում գիտությունը միշտ էլ խոշոր դեր է խաղացել։ Այդ դերը մեծացել է հատկապես ներկայումս, երբ այն լինելով արտադրաուժ, առաջատար նշանակություն է ստացել մարդկային գործունեության բոլոր ասպարեզներում։ Այժմ հայտնագործությունների հանգեցնող գիտական հետազոտություններն անմիջականորեն ներգործում են տնտեսության և նրա զարգացման տեմպերի վրա։ Հաշվի առնելով այդ, ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանի՝ ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներում նախատեսված է գիտության, հատկապես տեսական և կիրառական մաթեմատիկայի, միջուկային և կարծր մարմինների ֆիզիկայի, կոսմիկական տարածության հետագա ուսումնասիրությունների բուռն զարգացում։ Մոտակա տարիներին զգալիորեն կընդլայնվեն հետազոտական աշխատանքները երկրի կեղևի ուսումնասիրման, քիմիայի և բժշկության բնագավառներում։

Գիտության ժամանակակից զարգացումը հարուցում է նրա արդյունավետության բարձրացման, այսինքն՝ գիտական հետազոտությունների արագացման և դրանց արդյունքներն արտադրության մեջ ներդնելու խնդիրը, որը պետք է լուծվի գիտական ուժերի և նյութական միջոցների կենտրոնացման ու արդյունավետ օգտագործման միջոցով։ Դա կապահովի գիտության ու տեխնիկայի հիմնական պրոբլեմների լուծումը, որը տնտեսական առավել մեծ արդյունք կտա։ Այս ամենը, պայմանավորված է գիտական պրոբլեմատիկայի ու թեմատիկայի ճիշտ ընտրությամբ, ժամանակին համապատասխան մասնագիտությունների գիտական աշխատողների պատրաստմամբ, գիտական կազմակերպությունների համար գիտատեխնիկական բազայի ստեղծմամբ, գիտական հետազոտությունները բարձր մակարդակով կազմակերպելով, դրանց արդյունքներն արտադրության մեջ ժամանակին ներդնելով և մի շարք այլ հանգամանքներով։ Գիտատեխնիկական առաջընթացը պետք է հիմնվի գիտական լայն հետազոտությունների զարգացման ու արտադրության մեջ դրանց նվաճումների ներդրման վրա։

Ակադեմիկոս Վ. Տրապեզնիկովը Գիտության արդյունավետությունը հոդվածում տվյալներ բերելով 1966—1970 թթ. հնգամյակի պլանային հաշվարկ-

ների մասին, ցույց է տալիս, որ արտադրաֆոնդերի ընդլայնման համար
ներդրված ամեն մի ռուբլին կարող է 39 կոպեկով ավելացնել ազգային եկա-
մուտը։ Միաժամանակ գիտության մեջ ներդրված ամեն մի ռուբլին և նրա
արդյունքների յուրացումը (տեսական հաշվումներով), տալիս է ազգային
եկամտի 1 ռ. 45 կ. աճ։ Այսպիսով, գիտության վրա ծախսված յուրաքանչյուր
ռուբլին և նրա արդյունքների յուրացումը, արտադրաֆոնդերի ընդլայնման
համար ներդրված միջոցների համեմատությամբ, ժողովրդատնտեսությանը
(որպես ազգային եկամտի աճ), հատուցվում է ավելի քան քառակի անգամ։
Տրապեզնիկովի գնահատմամբ գիտությունը կապիտալ ներդրումների ամե-
նաշահավետ ոլորտն է։

Հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման մեջ գի-
տության խոշոր դերն արտացոլված է ստորև բերվող աղյուսակում։

| | 1959 թ. | 1965 թ. | տոկոսներով 1959 թ. համեմատությամբ |
|---|---|---|---|
| Ազգային եկամուտը (միլիոն ռուբլիներով) . . . | 873 | 1442 | 185 |
| Գիտության վրա ծախսված գումարը (միլիոն ռուբլիներով) . . . . . . . . | 15,6 | 43,5 | 278 |

Հայաստանի 75 գիտահետազոտական և 12 բարձրագույն ուսումնական
հաստատություններում այժմ աշխատում են գիտության 300 դոկտոր, 2300
թեկնածու և 8600 գիտաշխատող։ Ավելի քան 900 ասպիրանտ պատրաստվում
են գիտաշխատողներ դառնալու։ Կառավարությունն ամեն տարի հսկայական
գումարներ է ծախսում գիտության զարգացման նպատակով։ Այսպես, 1967
թվականին գիտահետազոտական աշխատանքների համար ծախսվեց մոտ
18,4 միլիոն ռուբլի, ինչպես և 3,8 միլիոն ռուբլով ավելացան գիտական հիմ-
նարկներում գիտատեխնիկական բազաների ստեղծմանը հատկացվող կապի-
տալ ներդրումները։ Ընթացիկ տարում ավարտվեցին մի քանի ինստիտուտ-
ների շենքերի և իզոտոպների կենտրոնական լաբորատորիայի կառուցումը։
Հնգամյա պլանով նախատեսված է օրգանական քիմիայի, միկրոկենսաբա-
նության, փորձարարական կենսաբանության ինստիտուտների և այլ օբյեկտ-
ների շինարարությունը։ Ֆիզիկայի ինստիտուտում գործարկվեց երկրի ամե-
նահզոր օղակային արագացուցիչը։

Համաշխարհային ճանաչում ունի ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանի
ղեկավարած Բյուրականի աստղադիտարանը, ուր ժամանակակից առաջավոր
գիտությունների մակարդակով հետազոտվում են արտագալակտիկային աստ-
ղագիտության բնագավառի, ոչ-ստացիոնար աստղերի, գալակտիկական մի-
գամածության, տեսական աստրոֆիզիկայի և աստրոֆիզիկայի այլ բնագա-
վառներ։ Ֆիզիկո-մաթեմատիկական գիտությունների ասպարեզում հաջողու-
թյամբ են աշխատում նաև գիտական 7 հիմնարկություն, այդ թվում՝ մաթե-
մատիկայի և մեխանիկայի, ֆիզիկայի, ռադիոֆիզիկայի ու էլեկտրոնիկայի,
գեոֆիզիկայի և ինժեներական երկրաշարժագիտության ինստիտուտները,
ինչպես նաև քիմիական ֆիզիկայի, ֆիզիկո-տեխնիկական լաբորատորիաներն
ու հաշվողական կենտրոնը։

Էլեկտրատեխնիկական արդյունաբերության բնագավառում նշանակալից
հետազոտություններ է կատարում կոմպլեքսային էլեկտրասարքավորման հա-



մամիութենական գիտահետազոտական ինստիտուտը (ԿէՀԳԻ), որտեղ զբաղ-
վում են հաճախականությունը կերպափոխող էլեկտրամեքենաների, սինխրո-
նիկ գեներատորների միասնական սերիաների, ուժային տրանսֆորմատորնե-
րի, բարձր պտուտականության գեներատորների և գազատուրբինային ագրե-
գատների ուսումնասիրությամբ։

Հանրապետության էկոնոմիկայի զարգացման համար մեծ նշանակու-
թյուն ունեն հանքաերկրաբանության բնագավառում Հայկական ՍՍՀ գիտու-
թյունների ակադեմիայի երկրաբանության ինստիտուտի հետազոտություն-
ները։ Գիտնական երկրաբանների կոլեկտիվը հիմնականում ուսումնասիրում
է երկրի կեղևի կառուցվածքի օրինաչափությունները, օգտակար հանածոների
հանքավայրերի գոյացումը, հետազոտության նոր մեթոդները, ինչպես և երկ-
րի կեղևի կառուցվածքի ու զարգացման հարցերը։ Լեռնա-մետալուրգիական
գիտահետազոտական ինստիտուտը ուսումնասիրում է լեռնային գործը, օգ-
տակար հանածոների հարստացումը, սև և գունավոր մետաղները։

Գիտությունների ակադեմիայի նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտը
զգալի հաջողությունների է հասել, ստեղծելով արդյունավետ նոր միջոցներ
սրտանոթային հիվանդությունների, տուբերկուլյոզի, վարակիչ և այլ հիվան-
դությունների բուժման ու պրոֆիլակտիկայի ասպարեզում։

Քիմիայի գիտահետազոտական ինստիտուտում կատարելագործվում է
նեֆելինային սիենիտների վերամշակման կոմպլեքսային տեխնոլոգիան, որի
բազայի վրա կառուցվում է Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատը։ Երկրի
և հանրապետության քիմիական ձեռնարկություններին մեծ օգնություն են
տալիս սինթետիկ կաուչուկի համամիութենական գիտահետազոտական ինս-
տիտուտի ֆիլիալը, ինչպես նաև Կիրովականի քիմիական գիտահետազոտա-
կան և նախագծային ինստիտուտը։ Գիտությունների ակադեմիայի օրգանա-
կան քիմիայի ինստիտուտը ուսումնասիրում է սինթեզի ու պոլիմերային
միացությունների փոխակերպման, գյուղատնտեսության քիմիացման պրոբ-
լեմները, ինչպես և մեխանիզմների ռեակցիաներն ու ացետիլենային միա-
ցությունների կազմության հակազդման ունակությունների կապերը։

Հանրապետությունում վերջին տարիներս ընդլայնվել են կենսաբանական
գիտության հետազոտությունները։ Մասնագիտացվել է գիտահետազոտական
կազմակերպությունների աշխատանքը։ Գիտությունների ակադեմիայի բիոքի-
միայի ինստիտուտում հետազոտվում են նյարդային սիստեմի, օրգանիզմի
ֆունկցիոնալ սիստեմների պաթոքիմիան և կենդանիների ու մարդու ֆունկ-
ցիոնալ էվոլյուցիայի բիոքիմիական և կառուցվածքային հիմքերը։ Գի-
տությունների ակադեմիայի բիոֆիզիկայի լաբորատորիան ուսումնասիրում է
բիոլոգիական սիստեմների էներգիայի կերպափոխության պրոբլեմները։
Փորձնական բիոլոգիայի բնագավառում հետազոտվում են միկրոօրգանիզմ-
ների ֆիզիոլոգիան և բիոքիմիան. այդ պրոբլեմներն ուսումնասիրում է նաև
գիտությունների ակադեմիայի միկրոբիոլոգիայի ինստիտուտը։

Գիտությունների ակադեմիայի բուսաբանության ինստիտուտում ուսում-
նասիրվում են բույսերի ինդիվիդուալ զարգացման օրինաչափությունները,
օնտոգենեզի, ֆոտոսինթեզի պրոցեսների կառավարումը, հանրապետության
բուսական աշխարհի և անտառների արդյունավետ օգտագործման հարցերը։
Գիտությունների ակադեմիայի ռադիացիոն գենետիկայի լաբորատորիայում
ուսումնասիրվում է ռադիացիոն գենետիկայի պրոբլեմը, իսկ նեյրոբիոնիկայի
լաբորատորիայում՝ ուղեղի ֆունկցիայի հուսալիությունը և մշակվում են

մեթոդներ՝ բարձրացնելու ռադիո-էլեկտրոնային սարքերի ապարատների հուսալիությունը:

Գյուղատնտեսության գիտահետազոտական աշխատանքներով զբաղվում են գիտական 9 հիմնարկություն՝ մոտ 700 գիտաշխատողներով: Գիտական հիմնարկությունների հիմնական նպատակն է՝ աճեցնել տեղական պայմաններին համապատասխան գյուղատնտեսական կուլտուրաների նոր, բարձր բերքատու տեսակներ, բազմացնել անասունների բարձր արտադրողական ցեղեր, մշակել հանրապետության աղակալած հողերի ռացիոնալ յուրացման մեթոդներ, ստեղծել լեռնային պայմաններին հարմար գյուղատնտեսական նոր, արդյունավետ մեքենաներ:

Բույսերի ֆոտոսինթեզի և ֆիզիոլոգիական պրոցեսների էներգետիկայով զբաղվում է գիտությունների ակադեմիայի ագրոքիմիական պրոբլեմների և հիդրոպոնիկայի ինստիտուտը: Այնտեղ կուսումնասիրվեն նաև ռադիոբիոլոգիայի պրոբլեմը, բիոսֆերայում կատարվող տեղաշարժերն ու ռադիոակտիվ նյութերի դասավորությունը, ինչպես և միգրացիայի շրջապտույտի տեղաշարժերն ու սնուցող տարրերի բալանսը բնության մեջ:

Հայաստանի բժշկական գիտահետազոտական հիմնարկությունները մեծ աշխատանք են տանում մարդու կյանքի երկարացման ու պահպանման համար: Կարդիոլոգիայի և սրտային խիրուրգիայի ինստիտուտն ուսումնասիրում է պաթոլոգիական փոփոխությունների անբավարարության պրոբլեմները՝ դրանք հարուցող պատճառների վերացման պայմաններում: Ռենտգենոլոգիայի և օնկոլոգիայի ինստիտուտն ուսումնասիրում է չարորակ նորագոյացությունները և մշակում բժշկական ռադիոլոգիային և ռենտգենոլոգիային վերաբերող գիտական դրույթներ: Քիմիական արտադրության աշխատողների առողջապահության կարիքների համար մշակվում են աշխատանքի և պրոֆեսիոնալ պաթոլոգիայի հիգիենայի գիտական հիմունքներ, իսկ հեմատոլոգիայի և արյան-փոխներարկման ինստիտուտում ուսումնասիրում են արյան համակարգի հիվանդությունները, ինչպես և արյան փոխներարկման հարցերը: Տրավմատոլոգիայի և օրթոպեդիայի ժամանակակից խնդիրներով է զբաղվում տրավմատոլոգիայի և օրթոպեդիայի ինստիտուտը:

Հասարակական գիտությունների գծով խոշոր գիտահետազոտական աշխատանքներ են տարվում Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի պատմության, հնէաբանության և ազգագրության, գրականության, լեզվի, արվեստի, տնտեսագիտության ինստիտուտներում, ինչպես և արևելագիտության, փիլիսոփայության և իրավունքի սեկտորներում:

Հայաստանի գիտահետազոտական հիմնարկներում ու կազմակերպություններում ուսումնասիրվող ու մշակվող պրոբլեմների ոչ-լրիվ թվարկումը գիտության բուռն վերելքն է ցույց տալիս հետևյալ աղյուսակը:

| | 1950 թ. | 1955 թ. | 1960 թ. | 1967 թ. |
|---|---|---|---|---|
| Գիտական հիմնարկներ | 33 | 54 | 76 | 98 |
| այդ թվում՝ | | | | |
| Գիտահետազոտական ինստիտուտներ, ֆիլիալներ և բաժիններ | 14 | 33 | 40 | 76 |
| Գիտական կայաններ և այլ գիտական հիմնարկներ | 19 | 21 | 37 | 22 |
| Գիտաշխատողներ | 2000 | 2516 | 4326 | 8580 |



Իսկ գիտության նվաճումների վերջին տարիների ներդրումը ժողովրդական տնտեսության մեջ արտացոլված է հետևյալ աղյուսակում:

| | Ըստ պլանի ներդրվող աշխատանքները | Փաստորեն ներդրվել են | Ներդրված է տոկոսներով |
|---|---|---|---|
| 1960 թ. | 364 | 340 | 93,4 |
| 1965 թ. | 264 | 165 | 62,5 |
| 1966 թ. | 366 | 313 | 89,3 |

Ըստ ակադեմիկոս Մ. Լավրենևի, ներդրման տրադիցիոն «կոնվեյերը» (ակադեմիական, ճյուղային ինստիտուտներ—կոնստրուկտորական բյուրոներ—արդյունաբերություն) հաճախ խիստ դանդաղ է գործում: Գիտության նվաճումների դանդաղ ներդրումն արտադրության մեջ, ամենից առաջ, հետևանք է գիտահետազոտական կազմակերպությունների փորձարարական բազաների թուլության: Ավարտուն շատ գործեր չեն կարող ներդրվել արտադրության մեջ առանց փորձնական նմուշների պատրաստման, դրանց փորձարկման և վերամշակման: Միաժամանակ, ճյուղային գիտական հիմնարկությունների մեծ մասն այդպիսի հնարավորություններ չունի: Կոնվեյերի մասնակիցների ենթարկվածությունը գերատեսչությանը և տերիտորիալ հեռավորությունը իջեցնում են նրա շարժման արագությունը:

Այդ տեսակետից ուսանելի և օգտակար է ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի Սիբիրի բաժանմունքի փորձը, որն այս տարի ակադեմիական քաղաքի մոտակայքում սկսեց ստեղծել կոնստրուկտորական բյուրոների կոմպլեքս: Այդ պայմաններում գիտական մտահղացումների հեղինակներն անմիջականորեն մասնակցում են նոր մեքենաների կոնստրուկցիաների մշակմանը: Գիտնականների և կոնստրուկտորների համագործակցությունը կնպաստի արտադրության մեջ գիտության նվաճումների ներդրման արագացմանը:

Հետազոտվող խնդիրների գիտական մշակումները՝ արտադրության մեջ կարելի է արդյունավետ ներդնել կոնվեյերի բոլոր օղակների միաժամանակյա աշխատանքն ապահովելու դեպքում:

Արտադրության մեջ գիտության նվաճումների ներդրումն արագացնելու համար անհրաժեշտ է հանրապետությունում ստեղծել մասնագիտական կազմակերպությունների (սկսած ակադեմիական գիտահետազոտական ինստիտուտից մինչև արդյունաբերական ձեռնարկությունները) փոխադարձ կապի ճկուն սիստեմ: Այդ պայմաններում գիտական աշխատողները պետք է շարունակեն ղեկավարել ճյուղային գիտական հիմնարկների, կոնստրուկտորական բյուրոների, փորձարարական արտադրության մեջ թեմաների (պրոբլեմների) մշակման աշխատանքները, պատասխանատվություն կրեն մշակվող թեմայի ավարտման ու ներդրման համար: Վերջին հաշվով՝ արտադրության մեջ ներդրված գիտական մշակումների և գյուտերի արդյունքով պետք է գնահատվի ճյուղային գիտահետազոտական ինստիտուտների, լաբորատորիաների, սեկտորների, նույնիսկ գիտաշխատողների գործունեությունը: Այդ պայմաններում առանձնապես պետք է բարձրացվի գլխավոր գիտահետազոտական ինստիտուտների դերն ու պատասխանատվությունն իրենց կատարած ուսումնասիրությունների համար, որոնք պետք է քննություն բռնեն գիտության համաշ-

խարհային նվաճումների համապատասխան բնագավառներում և ուղղություններում։

Գիտական հիմնարկների գերատեսչական այս կամ այն ենթարկվածությունը հատկապես բնորոշ է տեխնիկական գիտություններին, որն արդյունք է ողջ երկրում արդյունաբերության և գիտության զարգացման ճյուղային սկզբունքի։ Այդ, անշուշտ, ճյուղային արդյունաբերության բնագավառում գիտատեխնիկական առաջադիմության արագացման անհրաժեշտ պայմանն է։ Սակայն տեխնիկական գիտությունների ճյուղային սկզբունքով զարգացման հետևանքով մի քանի գիտական հիմնարկություններ զուգահեռաբար միևնույն թեման են ուսումնասիրում։ Չնայած խիստ ակտուալությանը, նպատակահարմար չէ, որ հանրապետության կեղտաջրերի մաքրման մեթոդներով զբաղվեն ավելի քան վեց գիտահետազոտական ինստիտուտ։ Ընդ որում, այդ բոլոր ինստիտուտներում թեմայի մշակումն սկսվել է տարբեր ժամանակներում, բայց պլանավորված է ավարտել 1970 թվականին։ Նման զուգահեռականությունն ապարդյուն և խոշոր ծախսեր է կլանում, որն անթույլատրելի է։ Ուրեմն անհրաժեշտ է կատարելագործել կազմակերպական ձևերը, ներդաշնակել գիտական հիմնարկների ու կազմակերպությունների գործունեությունը։

Նպատակահարմար է հանրապետության մասշտաբով գիտահետազոտական հիմնարկները կոորդինացնել «հորիզոնական» առումով. ակադեմիայում՝ հասարակական ու բնական, պետպլանում՝ տեխնիկական, գյուղատնտեսության մինիստրությունում՝ գյուղատնտեսական, առողջապահության մինիստրությունում՝ բժշկական գիտությունների և պետշինում՝ շինարարության և շինանյութերի արդյունաբերության գծով։

Սոցիալիստական երկրներում գիտության ֆինանսավորման հարցը կապված է գիտական հետազոտությունների արդյունավետության հետ, որն իր հերթին պայմանավորված է հետազոտվող պրոբլեմի ակտուալությամբ և գիտական աշխատանքների պլանավորման կատարելությամբ, նրա խթանումով, գիտատեխնիկական բազայով, սարքավորմամբ և մի շարք այլ հանգամանքներով։ Իհարկե, անհնար է որևէ հիմնավորված կախվածություն սահմանել գիտնականի կամ գիտական հարցերի տեսական ուսումնասիրությամբ զբաղվող լաբորատորիայի, ինչպես և այդ լաբորատորիայի տարեկան արտադրանքի կամ նույնիսկ այն ձեռնարկության արտադրանքի վրա տարվող ծախսերի միջև, որի համար նա աշխատում է։

Հանրապետությունում գիտահետազոտական աշխատանքների հիմնական ծախսումները արվում են բյուջետային հատկացումներից։ Այսպես՝ 1967 թվականին հանրապետության կողմից ֆինանսավորված գիտական կազմակերպություններին գիտահետազոտական աշխատանքների համար հատկացվող ընդհանուր գումարից՝ 16287 հազար ռուբլուց (առանց կապիտալ ներդրումների) միայն 911 հազար ռուբլին կամ 11,6 տոկոսը իրացվելու է ձեռնարկությունների և կազմակերպությունների հետ երկարատև պայմանագրերի կնքման գործմանը ձեռնարկելու համար։

Արդյունավետ գիտական հետազոտությունների հետագա ընդլայնման նպատակով անհրաժեշտ է, որ գիտահետազոտական կազմակերպությունների հետ պայմանագրերով կապված ֆինանսավորվող ձեռնարկություններն ու կազմակերպությունները նշանակալի չափով բարձրացնեն ամբողջացած թեմաներին հատկացվող ծախսումների տեսակարար կշիռը։ Գիտահետազոտական աշխատանքները պլանավորելու անհրաժեշտությունը բխում է գիտու-



թյան զարգացման բարձր տեմպերից և նրա աճող դերից։ Ոչ հեռու անցյալում շատ գիտնականներ գտնում էին, որ գիտական մտքի ոլորտը չպետք է սահմանափակել պլանով։ Ավելին, ըստ նրանց գիտության պլանավորումն արգելակում է դրա զարգացումը, քանի որ կարող է կաշկանդել գիտնականների ստեղծագործական միտքը։

Այժմ, երբ ժամանակակից զարգացած գիտությունը խոշոր արտադրողական ուժ է դարձել, իսկ գիտահետազոտական հիմնարկները՝ ինդուստրիալ տիպի խոշոր ձեռնարկություններ, գիտահետազոտական աշխատանքների պլանավորումը հույժ կարևոր է։ Աշխարհի նշանավոր գիտնականները գիտության պլանավորումն անհրաժեշտ են համարում. բայց դա կարող է իրեն չարդարացնել, եթե պլանավորումը դիտվի որպես գլխավոր նպատակ կամ ինքնանպատակ։ Գիտական հետազոտությունների պլանավորումը բավական բարդ պրոբլեմ է. այն պետական անհրաժեշտ նշանակություն ունեցող գիտական կարևոր խնդիրների ուսումնասիրությունը զուգակցում է գիտական հետազոտողների անձնական, ստեղծագործական նախաձեռնության հետ։ Գիտական հետազոտությունների պլանավորման բարդությունն արգասիք է բազում անհայտների, այդ պատճառով էլ դժվար է պլանում նախատեսել հետազոտման արդյունքների մանրամասները։

Գիտական հետազոտությունների հեռանկարային պլանավորման ժամանակ, ամենից առաջ, պետք է ճիշտ որոշվի գիտության տարբեր բնագավառների զարգացման և գիտության ճյուղերի ներքին խնդիրների հարաբերակցությունը։ Չնայած գիտահետազոտական աշխատանքների պլանավորման ողջ բարդությանն ու դժվարությանը, աշխարհի բոլոր երկրներում գիտության հանդեպ վարում են որոշակի քաղաքականություն. առաջադրվում են կոնկրետ խնդիրներ, պլանավորվում նրա զարգացման հիմնական ուղղությունները։

Վերջին տարիներս հանրապետությունում ամենից ավելի զարգացել են տեխնիկական, ֆիզիկո-մաթեմատիկական, բժշկական, քիմիական և բիոլոգիական գիտությունները։ Միաժամանակ տվյալները ցույց են տալիս, որ գիտության ու գիտական պրոբլեմների առանձին բնագավառների զարգացումը որոշ ճյուղերում լրջորեն ետ է մնում։ Տեխնիկական գիտությունների համեմատաբար բարձր տեմպերով զարգացման հետ մեկտեղ (ավելի քան 4,5 անգամ) հանրապետությունում, ըստ էության, գիտական հետազոտություններ չեն կատարվում ժողովրդական տնտեսության հեռանկարային զարգացման համար նոր էներգետիկ պաշարներ ստեղծելու բնագավառում։ Հանրապետության էներգաապահովվածության հարցերը լուծվում են ողջ երկրի մասշտաբներով, բայց Հայաստանի համար առաջնահերթ խնդիր է հուսալի, տեղական էներգետիկ բազայի ստեղծումը։ Էժան էլեկտրաէներգիա ստանալը ներկայի ու ապագայի հարց է։ Այդ պրոբլեմի ծագումն առնչվում է ջերմամիջուկային ռեակցիայի հետազոտությունների հետ։ Սակայն մեզ համար, ինչպես ընդգծում է ակադեմիկոս Պ. Լ. Կապիցան, ավելի օգտավետ է այրվող վառելիքից ստացվող ջերմության արդյունավետ օգտագործման պրոբլեմը, որը հանգեցնում է գիտության մեջ նոր խնդրի՝ հիդրոէլեկտրամագնիսական գեներատորների ստեղծմանը կամ, ինչպես ինքն է գրում՝ «...ամենից ավելի հրապուրիչ պետք է լինի քիմիական էներգիայի ուղղակի փոխարկումն էլեկտրականի կամ մեխանիկականի»։

Լուրջ թերություններ կան հանրապետության գիտական հիմնարկների

պլանավորման գործում: Այդ, ամենից առաջ, բազմաթեմայնությունն է, որը գիտական աշխատանքների ընթացքում ցրում է ուժերն ու նյութատեխնիկական միջոցները: Բազմաթեմայնության հետևանքով գիտական հիմնարկներում զգալիորեն մեծանում է հարցերի մշակման տևողությունը, ուստի և տվյալ թեման դրանից հետո կորցնում է ներդրման արդյունավետությունը և բարոյապես հնանում: Գիտական հիմնարկներում երբեմն խիստ սահման չի դրվում թեմաների և պրոբլեմների միջև: Մեկ թեմայի գիտական մշակման համար, որպես կանոն, պետք է նախատեսել 2—3 տարուց ոչ ավելի: Գիտական պրոբլեմի ուսումնասիրման ավարտման ժամկետի սահմանումը բավական բարդ խնդիր է և ամեն մի առանձին դեպքում պահանջում է անհատական մոտեցում ու պարբերական վերանայում:

Փոքր թերություն չէ նաև գիտական հիմնարկություններում այնպիսի թեմաների պլանավորումը, որոնք ժողտնտեսության համար, ինչպես և գիտական տեսակետից պակաս ակտուալ են և հետաքրքրություն չեն ներկայացնում: Օրինակ, արվեստի ինստիտուտը պլանավորել է հինգ տարում ուսումնասիրել Հայ թատրոնի և կինոյի պատմությունն ու տեսությունը: Ընդ որում, այդ թեմայի ուսումնասիրման համար նախատեսված է ծախսել 189,6 հազար ռուբլի: Նման օրինակները եզակի չեն:

Հանրապետությունում գիտահետազոտական աշխատանքների արդյունավետության բարձրացումը պետք է ընթանա գիտական ուժերը և նյութական ռեսուրսները առավել ակտուալ թեմաների շուրջը կենտրոնացնելու, նրանց մշակման ժամկետները կրճատելու, թեմատիկ պլանից պակաս արդյունավետ թեմաները հանելու և գիտական հիմնարկների աշխատանքները վերակառուցելու ճանապարհով: Գիտական հիմնարկներում պլանավորման բնագավառի թերությունները հետևանք են նաև այն բանի, որ պրոբլեմներն ու թեմաները պլանավորվում ու ֆինանսավորվում են անցյալ տարիներում ստեղծված խիստ բարդ դինամիկայով, առանց հանգամանալի վերլուծելու հետազոտվող թեմայի ավարտունությունը, անտեսելով նրա ակտուալությունն ու սպասվող արդյունքը, առաջադրված խնդիրները լուծելու ունակ կադրերով, գիտահետազոտական բազայով ապահովվածությունը և այլն:

Թեմատիկ պլանները հաստատելիս պետք է մանրակրկիտ վերլուծել թեմաները, մեծ ուշադրություն նվիրելով ինչպես կատարվող հետազոտության արժեքավորությանը, այնպես էլ նրա ժողովրդատնտեսական նշանակությանը: Դրա շնորհիվ առավել արդյունավետ կդառնան գիտական հետազոտությունները. այդ արդյունավետությունը կմեծանա նաև բարձրագույն ուսումնական հաստատություններում ընդգրկված գիտական կադրերի օգտագործմամբ, հանրապետության գլխավոր և առաջատար գիտական հիմնարկությունների հետ նրանց թեմատիկ պլանների կոորդինացմամբ և ակտուալ թեմատիկային ավելի շատ ֆինանսներ հատկացնելով:



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՐՀՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ԺԱՄԱՆԱԿ

Ա. ՎԱՐԴԱՊԵՏՅԱՆ

Կոմունիստական կուսակցությունն իր աշխատանքում անմիջականորեն հենվում է արհմիությունների վրա, որոնք այժմ իրենց շարքերում ունեն ավելի քան 80 միլիոն մարդ:

Սոցիալիստական շինարարության բոլոր էտապներում կուսակցությունը մեծ ուշադրություն է նվիրել արհմիություններին: Այդ մասին են վկայում կուսակցության մի շարք կոնֆերանսների, համագումարների և Կենտկոմի պլենումների որոշումները, որոնցում հատուկ ուժով ընդգծվում է արհմիությունների խնդիրները՝ սոցիալիստական արտադրության զարգացման, աշխատավորական լայն մասսաների հետ նրանց կապերի ամրապնդման, արհմիութենական վորների օրենսդրական իրավունքների պաշտպանության, դեմոկրատիայի ընդարձակման և քաղ-դաստիարակչական աշխատանքի մակարդակի բարձրացման բնագավառներում:

Նոր կյանքի կառուցման բոլոր էտապներում ՍՍՀՄ արհմիություններն անգնահատելի ծառայություն մատուցեցին ժողովրդական տնտեսության զարգացման, գիտության ու կուլտուրայի ծաղկման գործում: Նրանց դերը մեծ չափերով է աճել այժմ, երբ սովետական ժողովուրդը ձեռնամուխ է եղել նոր հնգամյակի մեծ խնդիրների լուծմանը:

Արհմիությունները խոշոր դեր են խաղում սովետական հասարակարգում: Ղեկավարվելով լենինյան դրույթներով, սովետական արհմիություններն անում են ամեն բան կոմունիզմի դպրոց լինելու իրենց հիմնական ֆունկցիան իրականացնելու համար:

Դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունը կյանքի կոչեց մասսաների կողմից արտադրության կառավարմանը մասնակցելու բազմազան ձևեր: Այդպիսի ձևերից մեկն էլ սոցիալիստական մրցության մեթոդն էր: Հայտնի է, որ այդ մրցության գաղափարն առաջ է քաշել Վ. Ի. Լենինը և հենց նա էլ առաջինը մշակեց մրցության կազմակերպման հիմնական սկզբունքները: Նա բարձր էր գնահատում առաջին կոմունիստական շաբաթօրյակների (1919 թ.) և աշխատանքային առաջին մրցության (1920 թ.) նշանակությունը, դրանց մեջ տեսնելով կոմունիզմի փաստական սկիզբը: Շաբաթօրյակները և մրցու-

թյունը սոցիալիստական շինարարության տարբեր էտապներում ընդունում են
նոր, ավելի բարձր ձևեր։
Կուսակցության XVI կոնֆերանսը (1929 թ.) կոչ արեց ՍՍՀՄ բոլոր բան-
վորներին և աշխատավոր գյուղացիներին՝ ծավալել սոցիալիստական լայն
մրցություն՝ առաջին հնգամյակի վիթխարի խնդիրների լուծման համար։ Կու-
սակցությունը սոցիալիստական մրցության կազմակերպման պարտականու-
թյունը դրեց սովետական արհմիությունների վրա։ «Գործարանների, շրջան-
ների, արտադրամասերի, արհեստանոցների և առանձին բանվորների միջև
տեղի ունեցող մրցությունը,— ասված է կոնֆերանսի բանաձևում,— պետք է
դառնա պրոֆեսիոնալ միությունների և տնտեսական օրգանների ջանադիր
կազմակերպման և ուշադիր ուսումնական առարկան»։
Արհմիությունները պատասխանատվության խոր զգացումով կենսագոր-
ծեցին կուսակցության այդ հանձնարարությունը։ Սոցիալիստական մրցու-
թյան կազմակերպումն արհմիությունների գործունեության մեջ դարձավ հիմ-
նականն ու առաջնահերթը և նրանց ղեկավարությամբ այն վերածվեց խոկա-
կան համաժողովրդական շարժման։ Այդ շարժման բարձրագույն ձևը կոմու-
նիստական աշխատանքի շարժումն է, որն արդեն ընդունել է մեծ թափ և ներ-
կայումս իր մեջ է ընդգրկում 32 միլիոն աշխատավոր։
Արտադրության կառավարմանը աշխատավորների լայն մասնակցու-
թյունն ապահովելու կարևոր ձևերից են արտադրական խորհրդակցություն-
ները։ Հայտնի է, որ ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի (1957 թ.)
որոշման համաձայն բոլոր ձեռնարկությունների և կառույցների արտադրական
խորհրդակցությունները վեր են ածվել մշտական գործող օրգանների, որոնք
աշխատում են արհմիությունների ղեկավարությամբ։ Այժմ երկրում հաշվ-
վում են 125 հազար այդպիսի մշտական գործող խորհրդակցություններ։
Մշտական գործող արտադրական խորհրդակցությունների մեջ մտնում են
բանվորների, ծառայողների, ադմինիստրացիայի, կուսակցական և կոմերի-
տական կազմակերպությունների, գիտա-տեխնիկական ընկերությունների
ներկայացուցիչներ։
Արտադրական խորհրդակցություններում քննարկվում են թե՛ աշխա-
տանքի արտադրողականության բարձրացմանը նպաստող, և թե՛ բանվոր-ծա-
ռայողների նյութական-կուլտուրական շահերն արտահայտող կենսական
հարցեր։ Արհմիութենական կազմակերպությունների խնդիրն է՝ բարելավել
արտադրական խորհրդակցությունների ղեկավարությունը, նրանց ուշադրու-
թյունը բևեռել ներքին ռեզերվների հայտնաբերման և օգտագործման վրա։
Կուսակցությունը անհրաժեշտ է համարում լայնորեն օգտագործել աշխատա-
վորներին արտադրության կառավարմանը մասնակից դարձնելու նաև մյուս
կարևոր ձևերը՝ բանվորական ժողովները, արհմիութենական և տնտեսական
ակտիվները, ճյուղային և միջճյուղային արտադրական-տեխնիկական կոն-
ֆերանսները, կոլեկտիվ պայմանագրերը և այլն։
Կոմունիզմի կառուցման գործում արհմիությունների դերն ուժեղացնելու
նպատակով ընդլայնված են ֆաբրիկա-գործարանային և տեղական կոմիտե-
ների ֆունկցիաները։ Այժմ բոլոր ֆաբրիկա-գործարանային և տեղական կո-
միտեներին լայն իրավունք է վերապահված մասնակցելու ձեռնարկություն-
ների արտադրական-ֆինանսական պլանների մշակմանը, աշխատավարձի
կարգավորման և աշխատանքի նորմավորման հարցերի լուծմանը։ Ֆաբրիկա-
գործարանային և տեղական կոմիտեների ֆունկցիաների մեջ է մտնում՝ վե-



րահսկել աշխատանքային օրենսդրության պահպանմանը։ Ավելին, նրանք
կարող են դնել այն տնտեսական ղեկավարներին փոխելու հարցը, որոնք,
ասենք, սիստեմատիկաբար խախտում են աշխատանքային օրենսդրության
կանոնները, կամ խուսափում են կոլեկտիվ պայմանագրով ստանձնած պար-
տավորությունները կատարելուց։
Արհմիությունները հսկայական գործ են կատարում գյուտարարների և
ռացիոնալիզատորների ընկերությունների աշխատանքների աշխուժացման
բնագավառում։ Ներկայումս գյուտարարների և ռացիոնալիզատորների հա-
մամիութենական ընկերության մեջ ընդգրկված են ավելի քան 3,5 միլիոն,
իսկ գիտա-տեխնիկական ընկերության մեջ՝ 2,4 միլիոն մարդ։ Արհմիություն-
ներն ակտիվորեն պայքարում են տեխնիկական պրոգրեսի, արտադրության
մեջ գիտության նվաճումների և նոր տեխնիկայի արմատավորման, տեխնո-
լոգիական պրոցեսների կատարելագործման համար։
ՍՄԿԿ XXI համագումարը, ելնելով մեր երկրի ներքին և միջազգային
դրությունից, եկավ այն եզրակացության, որ ներկա ժամանակաշրջանում
պետական օրգանների առանձին ֆունկցիաների հանձնումը հասարակական
կազմակերպություններին ոչ թե թուլացնում է սոցիալիստական պետության
դերը կոմունիզմի կառուցման գործում, այլ, ընդհակառակն, ընդարձակում և
ամրապնդում է սոցիալիստական հասարակարգի քաղաքական հիմքը, ապա-
հովում սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացումը։ Կուսակցու-
թյունը գտնում է, որ սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման բարձ-
րագույն էտապում, երբ միլիոնավոր մարդիկ հանդես կգան պետական ֆունկ-
ցիաների իրագործման դերում, կվերանա պետական իշխանության հատուկ
ապարատի անհրաժեշտությունը։ Սա, իհարկե, երկարատև, բարդ ու բազմա-
կողմանի պրոցես է, որը շոշափում է հասարակական կյանքի բոլոր կողմերը։
Ներկա ժամանակաշրջանում, երբ սովետական պետությունը դարձել է
համաժողովրդական պետություն, ավելի է մեծանում արհմիությունների դե-
րը՝ հատկապես պետության ներկայացուցչական օրգանների օրենսդրական
գործունեության մշակման գործում։ Այդ կապակցությամբ ՍՄԿԿ ծրագրում
ասված է. «Արհմիություններին, կոմերիտմիությանը և մյուս մասսայական
հասարակական կազմակերպություններին՝ ի դեմս նրանց ընդհանուր միու-
թենական և հանրապետական օրգանների, պետք է տրվի օրենսդրական նա-
խաձեռնություն, այսինքն՝ օրենքների նախագծեր մշակելու իրավունք»։
Սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման վառ արտա-
հայտությունն է պետական օրգանների մի շարք ֆունկցիաների հանձնումն
արհմիություններին և հասարակական մյուս կազմակերպություններին։ Այս-
պես, դեռևս 1933 թվականին, ՍՍՀՄ աշխատանքի ժողովրդական կոմիսարիա-
տի լուծարքից հետո, աշխատանքային օրենսդրության պետական հսկողու-
թյան ֆունկցիան և սոցիալական ապահովագրության ամբողջ գործն անցավ
արհմիություններին։ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1960
թվականի մարտի որոշմամբ, բոլոր հանրապետություններում արհմիություն-
ների տնօրինության հանձնվեցին սանատորիաները (բացի տուբերկուլյոզա-
յին), հանգստյան տները, պանսիոնատները, կուրորտային բուժարանները,
պոլիկլինիկաները և այլն։
Արհմիութենական կազմակերպություններին իրավունք է տրված մաս-
նակցելու արտադրական պլանների մշակման աշխատանքներին, լսելու հիմ-
նարկ-ձեռնարկությունների ղեկավարների հաշվետվությունները՝ պլանների

կատարման և կոլեկտիվ պայմանագրերով ստանձնած պարտավորությունների կատարման մասին։ Առանց արհմիությունների համաձայնության հիմնարկ-ձեռնարկությունների պետերը չեն կարող աշխատանքից հեռացնել կամ աշխատանքի վերցնել բանվոր-ծառայողների։ Արհմիություններին պետությունը հանձնել է տեխնիկայի անվտանգության վրա հսկողության ֆունկցիան, ինչպես նաև արտադրության սանիտարական և աշխատանքային օրենսդրության վրա հսկելու պարտականությունը։ Բացի այդ ամենից, այժմ արհմիությունների ակտիվ մասնակցությամբ են միայն լուծվում բանվոր-ծառայողների աշխատանքի պայմանների և կենցաղի բարելավման հետ կապված հարցերը, բնակարանային ֆոնդի բաշխումը և այլն։

Արհմիութենական կազմակերպությունները լայն վերահսկողություն են իրագործում առևտրի տեղական օրգանների գործունեության նկատմամբ, կոմերիտմիության հետ միասին նրանք ակտիվորեն մասնակցում են հասարակական դրուժինների և դատարանների կազմակերպման, սպորտային կազմակերպությունների աշխատանքներին։ Արհմիությունների կուլտուր-դաստիարակչական աշխատանքն իրականացվում է կուլտուրայի պալատների, կուլտուրայի տների, սպորտային հրապարակների, գրադարանների և այլ հաստատությունների միջոցով։

Զարգացման արդի էտապում մեր կուսակցությունն առանձնահատուկ ուշադրություն է նվիրում հասարակական կազմակերպությունների և աշխատավորների կողմից իրականացվող հասարակական վերահսկողությանը։ Միաժամանակ կուսակցությունն անհրաժեշտ է համարում կառավարման դեմոկրատական հիմունքների զարգացման հետ մեկտեղ, ավելի պարզեցնել սովետական ապարատը, որը զերծ լինի բյուրոկրատիզմից և քաշքշուկից։ Այս կապակցությամբ ևս է՛լ ավելի են բարդանում արհմիությունների խնդիրները։

Կոմունիստական հասարակարգի կառուցման ներկա էտապում ամենալայն դեմոկրատիզմը պետք է զուգակցվի աշխատավորների ընկերական կարգապահության ամրապնդմամբ։ Այս գործում հսկայական դեր ունեն կատարելու հասարակական կազմակերպությունները, որոնք աշխատավորներին դաստիարակում են հասարակական կոմունիստական ինքնավարության ոգով։

Սոցիալիստական պետականության զարգացումը,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— կհանգեցնի այն բանին, որ նա կվերափոխվի հասարակական կոմունիստական ինքնավարության, որի մեջ կմիավորվեն սովետները, արհեստակցական, կոոպերատիվ և աշխատավորների մյուս մասսայական կազմակերպությունները։ Այդ պրոցեսը կնշանակի դեմոկրատիայի հետագա զարգացում, որը կապահովի հասարակության բոլոր անդամների ակտիվ մասնակցությունը հասարակական գործերի կառավարմանը։

ՍՄԿԿ XX—XXII համագումարների որոշումներից հետո (արհմիությունների աշխատանքի նկատմամբ), բարձրացավ նրանց կազմակերպական դաստիարակչական աշխատանքի մակարդակը, ընդլայնվեց ներարհմիութենական դեմոկրատիան, բարձրացավ նրա անդամների ակտիվությունը երկրի հասարակական, տնտեսական և քաղաքական կյանքում։

Սովետական արհմիությունների հետագա հաջող գործունեության համար կոնկրետ ուղիներ նշեց ՍՄԿԿ XXIII համագումարը, որը պահանջեց, որպեսզի արհմիություններն այսուհետև ևս չթուլացնող ուշադրություն նվիրեն մասսաների կոմունիստական դաստիարակության գործին, հանդես գան մրցության գործունյա կազմակերպիչների դերում, օգնեն աշխատավորներին՝



ձեռք բերելու պետական ու հասարակական գործերի կառավարման հմտություններ, ակտիվորեն մասնակցեն աշխատանքի ու սպառման չափի նկատմամբ վերահսկողության իրագործմանը։ «Արհմիությունների պարտականությունն է,— ասված է ՍՄԿԿ XXIII համագումարի բանաձևում,— ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը, բարելավել աշխատավորների շրջանում կատարվող դաստիարակչական աշխատանքը, ավելի շատ հոգ տանել բանվորների և ծառայողների աշխատանքի ու կենցաղի կազմակերպման մասին»։

Սովետական արհմիությունները բացի իրենց տնտեսական, դաստիարակչական, կուլտուրական, կազմակերպական ֆունկցիաները կատարելուց, ակտիվ կերպով պայքարում են միջազգային բանվոր դասակարգի և արհմիութենական շարժման միասնության համար։ Սովետական արհմիությունները, աշխարհի առաջադիմական մյուս արհմիությունների հետ միասին, ղեկավարվելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի վեհ գաղափարներով, հանդես են գալիս որպես խաղաղության պահպանման առաջամարտիկներ։

Սովետական արհմիությունների մարտական ջոկատներից մեկը Հայաստանի արհմիություններն են։ Լինելով հանրապետության աշխատավորների ամենամասսայական կազմակերպությունը, արհմիությունները միշտ էլ պատվով են կատարել կուսակցության առաջադրանքները։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանի արհմիություններն աճեցին թե՛ որակապես՝ թե՛ քանակական տեսակետից։ Հայաստանի բանվոր դասակարգի և արհմիությունների կազմակերպվածության և միասնության աճը ցայտուն կերպով երևում է հետևյալ պերճախոս թվերից։ Եթե 1922 թվականի օգոստոսին (Հայաստանի արհմիությունների I համագումարի բացման պահին) հանրապետության արհմիությունների մեջ մտնում էին ավելի քան 16 հազար բանվոր-ծառայողներ, ապա՝ 1967 թվականին՝ հանրապետության 19 ճյուղային արհմիություններ միավորում են 709 հազար 988 բանվոր-ծառայող։ Բավական է ասել, որ վերջին 10 տարում արհմիության անդամների թիվը աճել է մոտ երեք անգամ։ Ներկայումս հանրապետության աշխատավորության 96,2 տոկոսն ընդգրկված է արհմիության շարքերում։ Հանրապետության արհմիությունները կուսկազմակերպությունների ղեկավարությամբ պայքարում են նոր հնգամյակի պլանների կատարման և գերակատարման համար։

Վերջին մեկուկես տարում և, հատկապես, հոբելյանական տարվա անցած ամիսներին Հայաստանի բազմաթիվ կոլեկտիվներ արժանացան միութենական փոխանցիկ դրոշների և մրցանակների, իսկ մեծ թվով կոլեկտիվներ՝ Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի, ՀԱՄԽ-ի, ինչպես նաև հանրապետության մինիստրությունների, գերատեսչությունների փոխանցիկ դրոշների։

Ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում ձեռք բերված հաջողությունների վառ ցուցանիշ է այն, որ 1963 թվականին արդյունաբերության արտադրանքը 120 անգամ գերազանցեց 1913 թվականի մակարդակը։ Ձեռք բերված հաջողություններն ավելի մեծ կլինեին, եթե արհմիութենական բոլոր կազմակերպություններն ավելի մոտիկից զբաղվեին աշխատանքի արտադրողականության բարձրացման հարցերով։ Հանրապետությունում դեռևս քիչ չեն այնպիսի կոլեկտիվները, որոնք չեն կատարում պետական պլանները և սոցիալիստական մրցության իրենց պարտավորությունները։ Արհմիութենական շատ կազմակերպություններ, ինչպես նշված է Հայաստանի արհեստակցական միությունների XIII համագումարի որոշման մեջ, անբավարար

աշխատանք են կատարում արտադրության գիտական կազմակերպման, ռեզերվների հայտնաբերման և օգտագործման, կառավարման գործում աշխատավորների ակտիվ մասնակցությունն ապահովելու ուղղությամբ։

Աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավումը միշտ էլ գտնվում է արհմիութենական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։ Բանվոր-ծառայողների երկու հանգստյան օրով հնգօրյա աշխատանքային շաբաթի անցումը լավ հնարավորություններ է ստեղծում նրանց աշխատանքային պայմանները բարելավելու և անվտանգության տեխնիկայի հարցերը հաջող լուծելու համար։

Աշխատավորների բարեկեցության կարևոր գործոններից մեկը սոցիալական ապահովագրությունն է, որով, ինչպես հայտնի է, վաղուց ի վեր մեր երկրում զբաղվում են արհմիությունները։ Պետության կողմից տարեցտարի ավելանում է սոցիալական ապահովագրության բյուջեի հատկացումները։

Հայաստանի արհմիութենական կազմակերպությունները վերջին տարիներին ավելի լրջորեն են զբաղվում առևտրի և հասարակական սննդի, կոմունալ-կենցաղային օբյեկտների աշխատանքի կազմակերպման, նրանց գործունեության նկատմամբ հասարակական հսկողություն իրագործելու խնդրով։ Սակայն բնակարանային և կոմունալ-կենցաղային շինարարության նկատմամբ արհմիութենական կազմակերպությունների կողմից իրականացվող հսկողությունը դեռևս թույլ է։ Արհմիությունները դեռևս անհրաժեշտ պայքար չեն ծավալում բանվոր-ծառայողների և ուսանող-երիտասարդության հասարակական սննդի կազմակերպման համար։ Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակակից էտապում կուսակցությունը սովետական արհմիությունների վրա լուրջ խնդիրներ է դրել նաև աշխատավորության կոմունիստական դաստիարակության բնագավառում։ Այդ նպատակով զգալիորեն ընդլայնվել է արհմիությունների կուլտ-լուսավորական օբյեկտների ցանցը։ Ներկայումս, հանրապետության արհմիությունների տրամադրության տակ են 58 ակումբներ ու կուլտուրայի պալատներ, 626 կարմիր անկյուններ, 54 կինոսարքեր, 95 գրադարաններ։

Արհմիութենական կազմակերպությունները ջանքեր չեն խնայում աշխատավորների գեղարվեստական ինքնագործունեության զարգացման համար։ Նրանց գործունեության մեջ մեծ տեղ է հատկացվում նաև երիտասարդության ֆիզիկական դաստիարակությանը։

Ինչպես արտադրության մեջ, այնպես էլ կոլեկտիվներում արհմիությունները ծավալում են կազմակերպական մեծ աշխատանք, որին մասնակցում են տասնյակ հազարավոր ակտիվիստներ։ Արհմիությունները լուրջ ուշադրություն են դարձնում արտադրամասային կոմիտեների և արհմիութենական խմբակների գործունեության բարելավմանը։ Հանրապետության սկզբնական կազմակերպություններում գործում են 3.700 արտադրամասային կոմիտեներ և 9 հազար արհմիութենական խմբակներ։ Բացի դրանից, հանրապետական, քաղաքային և շրջանային կոմիտեներին առընթեր գործում են 787, իսկ ՀԱՄԽ-ին առընթեր՝ 208 հասարակական հանձնաժողովներ։

Հայաստանի արհմիությունները կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ հաջողությամբ կենսագործում են ՍՄԿԿ XXIII համագումարի պատմական որոշումները, նոր հաղթանակներ են ձեռք բերում կոմունիզմի հոյակապ շենքի կառուցման գործում։

# ԼԵԶՈՒՆ ԵՎ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ*

## (ԼԵԶՎԱԲԱՆԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՇՈՒՐՋ)

Վ. ԱՎԱԳՅԱՆ

Լեզվի բնույթը, նրա կապը սոցիալական մյուս երևույթների հետ և, մասնավորապես, լեզվի և հասարակության փոխհարաբերությունը ժամանակակից գիտության կարևորագույն հարցերից մեկն է։ Այստեղ ենթադրվում է ժամանակակից գիտությունն ընդհանրապես, որովհետև լեզվի բնույթը, նրա էությունը հետաքրքրում է ոչ միայն լեզվաբանությանը, այլև մի շարք այլ գիտությունների, այդ թվում՝ առաջին հերթին փիլիսոփայությանը։

Պետք է նկատել, որ լեզվի, որպես հասարակական երևույթի, և հասարակության փոխհարաբերության հարցը այժմ արտակարգ կարևոր նշանակություն է ստացել։ Եվ դա ունի իր պատճառները, որոնցից ընդգծենք հետևյալը. Նախ՝ հայտնի է, որ Մառի տեսակետի քննադատությունից հետո սովետական լեզվաբանները երկար տարիների ընթացքում աչքաթող են արել լեզվի և հասարակության փոխհարաբերության բնույթը, այդ հարցը համարելով վուլգար սոցիոլոգիական, Մառի կողմից անօրինականորեն գերագնահատված հարց։ Մինչդեռ իրականում լեզվի և հասարակության փոխհարաբերության հարցը, լեզվի, որպես, սոցիալական երևույթի բնույթը, երբեք էլ չի կարող հնացած համարվել։

Մյուս կողմից, հարկավոր է ուշադրություն դարձնել հետևյալ հանգամանքի վրա. ժամանակակից բուրժուական փիլիսոփայական հոսանքների մեջ առանձնապես աչքի է ընկնում, այսպես կոչված, լեզվաբանական փիլիսոփայությունը, որի տարատեսակներից մեկը լեզվաբանական հարաբերականության տեսությունն է։ Այդ փիլիսոփայական խմբերը (որոնք մասնավորապես տարածված են Անգլիայում, ԱՄՆ-ում և այլ անգլիախոս երկրներում) գտնում են, որ փիլիսոփայության կարևորագույն պրոբլեմը, գիտության նյութը՝ լեզուն է, լեզվի ուսումնասիրությունը, փիլիսոփայական հարցերի, այսպես կոչված, լեզվաբանական վերլուծությունը։ Այլ կերպ ասած, նրանք ցանկանում են փիլիսոփայական բոլոր կարևորագույն հարցերը նենգափոխել լեզվական հարցերով կամ լեզվական հարցերի վերլուծությամբ։

Եթե այդ բոլորին ավելացնենք և այն, որ լեզուն հասարակական մտքի ողջ պատմության ընթացքում իր վրա է սևեռել լեզվաբանների, փիլիսոփանե-

* Տպագրվում է հարցադրման կարգով —Խմբ.։

րի, մարդաբանների, սոցիոլոգների ուշադրությունը և կուտակվել է հսկայական գրականություն լեզվի հասարակական, սոցիոլոգիական բնույթի վերաբերյալ, ապա պարզ կդառնա, թե ինչպիսի կարևոր նշանակություն ունի նրա բնույթի, սոցիալական էության բացահայտումը մարքսիստական փիլիսոփայության տեսանկյունից։

Լեզվի բնույթը քննարկելիս ժամանակակից բուրժուական փիլիսոփայական մի շարք ներկայացուցիչներ այն կարծիքն են հայտնում, թե մարդու ամենաէական հատկանիշը լեզուն է։ Լեզվից օգտվելով, լեզուն ունենալով է, որ մարդը զանազանվում է կենդանական աշխարհի մյուս ներկայացուցիչներից։ Առաջին հայացքից թվում է, թե իրոք, լեզուն է տարբերում մարդուն բոլոր այլ կենդանի արարածներից և, հետևաբար, ինչպես պնդում են բուրժուական շատ մտածողներ, լեզուն է դառնում մարդու էությունը։ Ավելացնենք նաև, որ մի շարք բուրժուական տեսաբաններ գտնում են, որ մարդը զանազանվում է մյուս բոլոր կենդանիներից իր գիտակցությամբ, ինքնագիտակցությամբ։

Չպետք է ենթադրել, որ գոյություն ունի երկու հետևողական տեսակետ, որոնցից մեկի համաձայն՝ մարդուն կենդանական աշխարհի մյուս ներկայացուցիչներից զատողը լեզուն է, իսկ մյուսի համաձայն՝ գիտակցությունը։ Շատ հաճախ այդ տեսակետները նույն սկզբունքի տարբեր արտահայտություններն են, որովհետև բուրժուական շատ գաղափարախոսներ, մասնավորապես լեզվաբանական փիլիսոփայության ներկայացուցիչները, լեզուն նույնացնում են գիտակցության հետ, մտածողության հետ։ Ըստ նրանց լեզուն, լեզվական գործունեությունը նույն մտածողությունն է, նույն գիտակցությունը։ Սակայն անկախ այն հանգամանքից, թե այս երկու տեսակետներն ըստ էության նույնն են, թե տարբեր, երկու դեպքերում էլ մենք գործ ունենք միևնույն սխալի հետ։ Նման տեսակետի ներկայացուցիչները խառնում են կարևորագույն սոցիալական երևույթի պատճառն ու հետևանքը։ Այն, ինչ հետևանք է, նրանք ներկայացնում են որպես պատճառ, դրանով իսկ միանգամայն թյուր մեկնաբանություն տալով լեզվին՝ որպես սոցիալական երևույթի։

Լեզվի էությունը, նրա առաջացումը, նրա սոցիալական բնույթը միանգամայն գիտականորեն բացահայտել են մարքսիզմ-լենինիզմի կլասիկները։ Լեզվի առաջացումը նրանք կապել են մարդկանց աշխատանքային գործունեության, մարդկային կոլեկտիվի ստեղծման հետ, մարդկային հասարակության առաջացման հետ։ Ինչպես լեզվի, գիտակցության, այնպես էլ հասարակության առաջացման հիմնական նախապայմանը և կարևորագույն, էական պատճառը մարդու աշխատանքային գործունեությունն է, աշխատանքը։

Ինչպես նշում է Էնգելսը, «աշխատանքի զարգացումն անհրաժեշտաբար նպաստում էր հասարակության անդամների ավելի սերտ համախմբմանը, որովհետև աշխատանքի շնորհիվ ավելի հաճախակի դարձան փոխադարձ աջակցության, համատեղ գործունեության դեպքերը, և ավելի պարզ դարձավ այն բանի գիտակցումը, որ այդ համատեղ գործունեությունն օգտակար է յուրաքանչյուր առանձին անդամի համար։ Կարճ ասած՝ ձևավորվող մարդիկ հասան այն բանին, որ նրանց մեջ երևան եկավ միմյանց ինչ-որ բան անելու պահանջ: Պահանջը ստեղծեց իր օրգանը։ Կապկի անզարգացած կոկորդը մոդուլացիայի միջոցով դանդաղ, բայց անշեղորեն փոխակերպվում էր ավելի ու ավելի զարգացած մոդուլացիայի համար, իսկ բերանի օրգաններն աստիճանաբար սովորում էին հոդաբաշխ հնչյուններն արտասանել մեկը մյուսի ետևից։

Որ աշխատանքի պրոցեսից և աշխատանքի հետ միասին՝ լեզվի առա-



ջացման այս բացատրությունը միակ ճիշտն է, այդ ապացուցում է համեմատությունը կենդանիների հետ» (Ֆրիդրիխ Էնգելս, Բնության դիալեկտիկա, Երևան, Հայպետհրատ, 1957, էջ 173)։

Էնգելսը միանգամայն իրավացիորեն նկատում է նաև, որ պատրաստի մարդու երևան գալով հանդես է գալիս և՛ մի նոր երևույթ՝ հասարակությունը։ Պատրաստի մարդը, այսինքն աշխատանքի հետևանքով առաջացած մարդը, հասարակության անդամ է, հասարակական մարդ է և քանի որ նա հասարակության անդամների հետ հաղորդակցվում է լեզվի միջոցով, հետևաբար լեզուն անմիջականորեն առնչվում է հասարակության հետ, լեզուն հասարակական բնույթ ունի, լեզուն կատարում է սոցիալական ֆունկցիաներ։ Լեզուն հասարակական գործոն է։

Առաջանալով աշխատանքի պրոցեսում, աշխատանքի շնորհիվ, լեզուն իր հերթին ներգործում է մարդու ողջ ապրելակերպի, նրա հասարակական գործունեության վրա, մարդու այլ զգայարանների, այլ օրգանների վրա։ Աշխատանքի դերը կապկի մարդացման պրոցեսում աշխատության մեջ Էնգելսը նկատում է, որ սկզբում աշխատանքը, իսկ այնուհետև ու դրա հետ մեկտեղ հոդաբաշխ խոսքերը հանդիսացան այն երկու ամենագլխավոր խթանները, որոնց ազդեցության տակ կապկի ուղեղը աստիճանաբար փոխակերպվեց մարդկային ուղեղի, որը կապկի ուղեղի հետ ունեցած իր ողջ նմանությամբ հանդերձ, նրան շատ է գերազանցում իր մեծությամբ և կատարելությամբ (նույն տեղում, էջ 174)։

Անմիջականորեն ազդելով ուղեղի գործունեության վրա, լեզուն նույնպես միջնորդավորված ձևով, ուղեղի միջոցով ազդում է մարդու այլ գործողությունների վրա։

Լինելով աշխատանքի արդյունք և առաջանալով աշխատանքի պրոցեսում, լեզուն իր հերթին զարգացնում է մարդկային հասարակության անդամների այլ զգայարանները և այլ գործունեությունները, կարևոր, նշանակալի դեր է խաղում մարդկության կյանքում։ Ինչքան զարգանում է հասարակությունը, այնքան ավելի մեծ է դառնում լեզվի դերը՝ որպես հաղորդակցության միջոցի։ Մարդկային հասարակության պատմությունը ցույց է տալիս, որ լեզվի կարևորագույն ֆունկցիան կոմունատիվ ֆունկցիան է։ Այս ֆունկցիան պետք է հասկանալ շատ լայն իմաստով։ Լեզվի կոմունատիվ (հաղորդակցման) ֆունկցիայի էությունը նախ և առաջ այն է, որ նրա միջոցով մարդիկ կարողանում են միմյանց հետ փոխանակել մտքեր, իրենց հոգեկան աշխարհի ողջ արդյունքները և, հետևաբար, լեզվի միջոցով ոչ միայն ստեղծվում, այլև ամրապնդվում է մարդկային հասարակության սոցիալական կոլեկտիվը։

Պետք է ընդգծել նաև այն կարևոր հանգամանքը, որ լեզուն, որպես հաղորդակցության միջոց, հանդես է գալիս ոչ միայն միևնույն ժամանակաշրջանում ապրող մարդկանց համար, այլ նաև լեզվի միջոցով է, որ տվյալ սերնդի ձեռք բերած հոգեկան մշակույթի ողջ հարստությունը, սոցիալական գործունեության ողջ արդյունքը ամրագրվում և հաղորդվում են այլ սերունդների։ Յուրաքանչյուր սերունդ հանդես է գալիս ոչ թե ամայի տեղում, անապատում, այլ որպես նախորդ սերունդների հոգեկան մշակույթի ժառանգորդ, և այս պրոցեսը տեղի է ունենում ամենից առաջ շնորհիվ լեզվի, շնորհիվ այն բանի, որ լեզուն հաղորդում է մի սերնդի ձեռք բերած նվաճումները հետագա սերունդներին։ Ահա թե ինչու, լեզուն առաջանալով, մեկընդմիշտ գործում է

մարդկային պատմության ընթացքում և կմնա որպես հաղորդակցության կարևոր գործիքը։

Միևնույն ժամանակ դա նշանակում է, որ ոչ միայն հասարակությունը չի կարող գոյություն ունենալ առանց լեզվի, այլ անիմաստ է պատկերացնել լեզուն առանց հասարակության, որովհետև լեզուն առաջացել է հասարակությանը ծառայելու համար։ Առանց այդ կարևոր ֆունկցիան կատարելու լեզվի գոյությունն անիմաստ է դառնում։

Որպես հասարակական երևույթ, լեզուն պատկանում է մի շարք այլ հասարակական երևույթների թվին, ինչպիսիք են մտածողությունը, գիտակցությունը և այլն։ Այդ բոլոր հասարակական երևույթներն ունեն ինչպես ընդհանուր, այնպես և տարբերիչ գծեր։ Ընդհանրությունն այն է, որ և՛ լեզուն, և՛ մտածողությունը, և՛ գիտակցությունը աշխատանքի արդյունք են, հասարակության ծնունդ, հասարակական բնույթ ունեն։ Սակայն նրանց միջև կան նաև արմատական տարբերություններ։ Ի տարբերություն գիտակցության, որը դասակարգային հասարակությունում դասակարգային բնույթ ունի, լեզուն չի կարող լինել դասակարգային։ Այս հանգամանքը բխում է լեզվի հիմնական ֆունկցիայից, նրա կոմունատիվ բնույթից։ Քանի որ լեզուն առաջացել է որպես գործիք հասարակության մեջ մարդկանց մտքերը, հոգեկան աշխարհի արդյունքները միմյանց հաղորդելու համար, ուստի և չի կարող պատկանել միայն այս կամ այն դասակարգին, չի կարող լինել դասակարգային։

Լեզուն ընդհանուր է միևնույն ազգի շրջանակներին պատկանող հասարակության բոլոր անդամների համար։ Հարց է առաջանում. ինչպե՞ս է, որ լեզուն կարողանում է հաղորդակցել մարդկանց մտքերը։ Բանն այն է, որ մարդու գիտակցության մեջ մտքերը առաջանում են լեզվական հիմքի վրա, ամրացվելով լեզվական թաղանթում, բառերի, դարձվածքների, նախադասությունների մեջ։ Մարդու մտքերն առաջանում և պահպանվում են լեզվի օգնությամբ, նրա միջոցով։

Լեզուն և մտածողությունը գտնվում են դիալեկտիկական միասնության մեջ։ Դիալեկտիկական միասնություն ասելով պետք է հասկանալ հակադիր երևույթների անխզելի կապ և ոչ թե նրանց նույնություն։ Մինչդեռ փիլիսոփայության պատմության մեջ հայտնի է ինչպես լեզվի և մտածողության անջատումը միմյանցից, այնպես էլ դրանց նույնացումը։ Վերջինս, մասնավորապես բնորոշ է ժամանակակից լեզվաբանական փիլիսոփայության համար, որի տեսության համաձայն, խոսքն արդեն մտածողություն է։

Չափազանց կարևոր է լեզվի դերը մարդու մտածողության, աբստրակտ իմացության ձևավորման գործում։ Լեզվի շնորհիվ է, որ մարդու մոտ տեղի է ունեցել անցումը զգայական իմացությունից տրամաբանական իմացության, որը մարդու որակական առավելություններից մեկն է կենդանիների նկատմամբ։ Զգայական իմացությունից տրամաբանական իմացության անցման, աբստրակտ մտածողության ձևավորման գործում լեզվի կարևորագույն դերը Վ. Ի. Լենինն արտահայտել է հետևյալ հակիրճ, բայց բազմանշանակալից խոսքով. «Ամեն մի բառ (խոսք) արդեն ընդհանրացնում է» (Երկեր, հ. 38, էջ 344)։

Օժտված լինելով լեզվով, խոսքի վերը նշված կարողություններով, մարդն անջատվել է կենդանական աշխարհից, իր որակական առավելությունները հաստատել վերջինիս նկատմամբ։ Անգլիական նշանավոր փիլիսոփա Բերտրան Ռասելը պատկերավոր ձևով է արտահայտում այս դրույթը։ Ըստ նրա, լեզուն



մեր անձնական փորձի, արտաքին և հասարակական փորձի յուրացման միջոցն է։ Շունը չի կարող պատմել իր ինքնակենսագրությունը։ Ինչքան էլ նա գեղեցիկ հաչի, չի կարող հաղորդել, որ իր ծնողները եղել են չնայած աղքատ, բայց ազնիվ շներ։ Մինչդեռ մարդը կարող է և անում է այդ։

Դեռևս հասարակության պատմության սկզբնական շրջանում մարդիկ զգալով, բայց չհասկանալով լեզվի կարևորագույն նշանակությունը բացարձակացրել են դա, ֆետիշացրել նրա դերը հասարակության առաջացման, զարգացման, գոյության գործում, լեզվին վերագրել մոգական ուժ։ Այս բանին հատկապես նպաստել են այն հին փիլիսոփաները, որոնք փիլիսոփայության մտքի պատմության մեջ հայտնի են որպես սոփեստներ։

Հանդես գալով պատմական այնպիսի ժամանակաշրջանում, երբ հունական դեմոկրատիան իր ծաղկման շրջանն էր ապրում, հին հույն սոփեստները նկատեցին, որ հասկացություններն ունեն ճկունության հատկություն և բառերի, խոսքի, ճառի միջոցով կարելի է օգտագործել հասկացությունների այդ ճկունությունն ու ստեղծել մարդկանց մոտ այս կամ այն համոզմունքը։ Սոփեստները մեծ նշանակություն տվեցին ճառին, հռետորությանը, գեղեցիկ խոսքի արվեստին և ստեղծեցին խոսքի պաշտամունքը։ Նրանք եկան այն եզրակացության, որ խոսքի միջոցով կարելի է շրջել իշխանություններ, ընդարձակել տարածություններ, գրավել նոր երկրներ, աղքատին դարձնել հարուստ, հարուստին՝ աղքատ։

Չնայած այս տեսակետը գիտականորեն հիմնավորված չէր և ըստ էության հանդիսանում էր թերաճ հասարակական հարաբերությունների արդյունք, բայց, այնուամենայնիվ, զգալի հետք թողեց լեզվի մասին հետագա ուսմունքների վրա։ Այդ առումով հատուկ ուշադրության է արժանի լեզվաբանական փիլիսոփայությունը, որի համաձայն փիլիսոփայության հիմնական օբյեկտը լեզուն է, լեզվի ուսումնասիրությունը։ Սակայն այստեղ պետք է մի պարզաբանում մտցնել։

Իրենք՝ լեզվաբանական փիլիսոփայության ներկայացուցիչները, միանշանակ բացատրություն չեն տալիս լեզվաբանական փիլիսոփայությանը։ Տեսակետներից մեկի համաձայն լեզվաբանական փիլիսոփայության հիմնական ուսումնասիրության օբյեկտը լեզուն է, որը փոխարինում է փիլիսոփայության մյուս բոլոր հիմնական հարցերին, այդ թվում և փիլիսոփայության գերագույն խնդրին, այն է՝ մտածողության և կեցության փոխհարաբերությանը։ Այս տեսակետի հիմնական սխալը լեզվի՝ որպես փիլիսոփայության օբյեկտի ուսումնասիրության, բացարձակացումն ու մետաֆիզիկացումն է։ Որ իրոք, լեզուն՝ իր սոցիալական բնույթով, լեզվի իմացաբանական էությունը փիլիսոփայության ուսումնասիրության նյութը պետք է լինեն, այդ կասկածից վեր է։ Սակայն սխալն այն է, որ լեզվաբանական փիլիսոփայական տեսակետի կողմնակիցները լեզվի փիլիսոփայական հետազոտմամբ են փոխարինում փիլիսոփայության բոլոր մյուս հարցերը։

Սակայն շատ ավելի ճանաչում է գտել այն տեսակետը, թե լեզվաբանական փիլիսոփայությունը հանդես է գալիս որպես յուրաքանչյուր երևույթի ուսումնասիրության, հետազոտության, վերլուծության մեթոդ։ Ըստ այդ տեսակետի, փիլիսոփայական ինչպիսի հարց էլ քննարկելիս լինենք, այն պետք է դիտենք լեզվի տեսակետից, այսինքն այդ հարցը պետք է լեզվական վերլուծության ենթարկենք, քննարկելով այն բառերը, այն նախադասությունները, որոնք մենք օգտագործում ենք տվյալ հարցը մեկնաբանելու համար։ Այդ տեսակետը,

այսինքն լեզվաբանական փիլիսոփայությունը՝ որպես մեթոդ, մեր կարծիքով միանգամայն անհիմն է։ Լեզվական վերլուծությունը չի կարող լինել փիլիսոփայական, ճանաչողական, իմացական մեթոդ։

Այս տեսության հետ որոշակի առնչություն ունի և ավելի վաղ է առաջացել լեզվաբանական հարաբերականության տեսությունը, որն սկիզբ է առնում գերմանացի նշանավոր լեզվաբան Հումբոլդի աշխատությունից, այնուհետև իր զարգացման տարբեր փուլերն է ապրել ամերիկյան հայտնի լեզվաբան Սեպիրի ուսումնասիրություններում և ապա ամերիկյան ինժեներ, լեզվաբան, մարդաբան Ուորֆի գրքերում և իր փիլիսոփայական ընդհանրացումներն է գտել ընդհանուր սեմանտիկայի հիմնադիրներ և ներկայացուցիչներ Կորժիբսկու, Հայակավայի, Ռապոպորտի, Չեյզի և այլոց աշխատություններում։ Այս տեսությունը հայտնի է նաև որպես Սեպիր-Ուորֆի հիպոթեզ, որն իր գերմանական տարատեսակն ունի ի դեմս Լեո Վայսգերբերի լեզվաբանական աշխատությունների։

Ըստ լեզվաբանական հարաբերականության տեսության կամ Սեպիր Ուորֆի հիպոթեզի, լեզուն է, որ իրենով բնորոշում է մարդկանց մտածելակերպը, այսինքն նրանց հասկացությունների համակարգը, աշխարհայացքը, վարվելակերպը, կուլտուրան։ Այս տեսությունը ուղղակի կապ է տեսնում լեզվի և հասարակական մի շարք երևույթների միջև և այդ կապը մեկնաբանում որպես մի այնպիսի զուգակցություն, որտեղ լեզուն պատճառ է, իսկ մյուս հասարակական երևույթները՝ այդ պատճառից բխող հետևանք։

Այդ տեսությունն առաջին հայացքից այնքան ակնհայտ սխալներ է պարունակում, որ թերևս պետք է հիմքից մերժվի։ Տվյալ հիպոթեզի մարքսիստական գնահատականը, ընդհանուր լեզվաբանության առումով, տրված է բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր Վ. Ա. Զվեգինցևի աշխատություններում, իսկ ընդհանուր փիլիսոփայական առումով՝ փիլիսոփայական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր Գ. Ա. Բրուտյանի աշխատություններում։ Նշված երկու գիտնականները մատնանշել են, որ այդ տեսության հիմնական դրական արժանիքը լեզվի կարևորագույն դերի ցուցադրումն է հասարակության զարգացման բազմաթիվ բնագավառներում։ Սակայն, միևնույն ժամանակ, սովետական գիտնականները կոնկրետ գիտական հետազոտության հիման վրա ցույց են տվել, որ լեզվաբանական հարաբերության տեսության ներկայացուցիչները բացարձակացնելով ճշմարտության այս կամ այն հատիկը, ընկնում են ծայրահեղության մեջ և, վերջին հաշվով հասարակության զարգացման գործում լեզվի ունեցած դերի մասին սխալ եզրակացությունների են հանգում։

Պետք է, անշուշտ, համաձայնվել այն դրույթի հետ, որ լեզուն խիստ սերտ կապի մեջ է հասարակական, սոցիալական բնույթ ունեցող մի շարք երևույթների հետ և չափազանց կարևոր ու հետաքրքրական է այդ հարաբերության իրական բովանդակության բացահայտումը։ Արդ, ավելի մոտիկից ծանոթանանք այդ տեսության, փաստարկման և դրանից բխող կարևորագույն եզրակացությունների հետ, որոնց հիմնական վերլուծությունը միևնույն ժամանակ հնարավորություն կտա պարզել լեզվի և հասարակության միջև եղած կապերի, լեզվի և հասարակական մի շարք կարևոր այլ երևույթների միջև եղած իրական հարաբերության էությունը։

Լեզվի կապը ժողովրդի պատմության, հասարակության, հասարակական երևույթների հետ ճիշտ ըմբռնելու համար պետք է կոնկրետ մոտեցում ցու-



ցաբերել այն բանին, թե ինչ ենք հասկանում «լեզու» ասելով։ Ավելի ստույգ, մենք պետք է տարբերակենք լեզվի իմաստաբանությունը, քերականական կառուցվածքը, հնչյունական կողմը և լեզվի այլ բնորոշ հատկությունները։

Շատ լեզվաբաններ, փիլիսոփաներ լեզուն դիտում են որպես սիմվոլների, նշանների համակցություն, համակարգ։ Չնայած այս տեսակետը չի կարելի համարել բոլորի կողմից ընդունված, այնուամենայնիվ բավականին հիմքեր ունի։ Եթե լեզուն մենք համարում ենք սիմվոլների, նշանների համակցություն, համակարգ, ապա այդ դեպքում նկատի ունենք ոչ թե լեզվի իմաստային կողմը, ոչ թե իմաստաբանությունը, լեքսիկան, այլ լեզվի հնչյունային կողմը։ Այդ դեպքում էս պետք է նկատել, որ լեզուն որպես նշանների, սիմվոլների համակարգ, արմատապես տարբերվում է բոլոր այլ կարգի սիմվոլների համակարգից։

Կանգ չառնելով այդ հարցի մանրամասնությունների վրա, որ այլ դեպքերում կարող են կարևոր գիտական հետաքրքրություն ներկայացնել, նշենք միայն, որ լեզուն որպես սիմվոլների համակարգ, էապես տարբերվում է բոլոր տեսակի, բոլոր այլ կարգի սիմվոլների համակարգից նրանով, որ հանդիսանում է պատմա-բնական պրոցեսի արդյունք։ Մինչդեռ մյուս բոլոր սիմվոլների համակցությունները, համակարգերը, այդ թվում՝ մաթեմատիկայի, քիմիայի, ֆիզիկայի և այլ բնագավառների, իրենցից ներկայացնում են սոսկ պայմանավորվածության և ոչ բնական-պատմական պրոցեսի արդյունք։ Իհարկե, անգամ այն դեպքում, երբ լեզուն մենք համարում ենք նշանների համակցություն, պետք է նկատել, որ չենք կարող այդ նշանները համարել ուղղակի իրականության արտացոլում։ Սակայն այդ դեպքում էս մենք կարող ենք ասել, որ այդ նշաններն ունեն իրենց բովանդակությունը, իրենց լեքսիկական կամ սեմանտիկական նշանակությունը և այդ սեմանտիկական նշանակությունը արտացոլում է օբյեկտիվ իրականությունը։ Անդրադառնալով բնական լեզվին, նկատենք, որ նրա նշաններն ունեն իրենց համակցության կանոնները, որ և կոչվում է լեզվի քերականական կառուցվածք։ Պետք է տարբերել լեզվի հնչյունային, իմաստային կողմը և քերականական կառուցվածքը։ Եվ երբ լեզուն դիտում ենք հասարակության, շրջապատող իրականության հետ հարաբերության մեջ, ապա մենք ճիշտ եզրակացության կգանք այն դեպքում, երբ տարբերակցված մոտեցում ցուցաբերենք լեզվի բաղկացուցիչ տարրերի նկատմամբ։

Լեզվի սերտ կապը հասարակության պատմության, ժողովրդի պատմության հետ առաջին հերթին նկատվում է լեզվի բովանդակային կազմի իմաստային տարրերի մեջ։ Կարելի է որոշակիորեն պնդել, որ հասարակության պատմության յուրաքանչյուր դարաշրջան յուրովի արտացոլվում է լեզվի բառային կազմի, լեզվի իմաստային կողմի մեջ։ Եթե հատուկ ուսումնասիրության նյութ դարձնենք տարբեր ժամանակաշրջանում հրապարակված բառարանները, տարբեր դարաշրջանների հեղինակների բառային կազմը, կարելի է նկատել, որ ժողովրդի պատմական բախտը, նրա կյանքի տնտեսական, մշակութային հարաբերություններն իրենց յուրովի հետքը, կնիքն են թողել լեզվի վրա։ Լեզվի միջոցով կարելի է հետևել ժողովրդի անցած ուղու առանձնահատկություններին, և լեզվի այդ կողմի՝ իմաստային, լեքսիկական կողմի, ուսումնասիրությունը ոչ միայն հարուստ նյութ է տալիս լեզվաբաններին, այլև հասարակության պատմության մասնագետներին, պատմաբաններին, մարդաբաններին, հասարակագետներին։ Դրան լավագույն ապացույց կարող են ծառա-

յել լեզվի մեջ արտացոլված այն նոր իմաստային երանգները, անգամ այն նոր
բառերը կամ բառերի ու լեզվական դարձվածքների այն նոր կիրառումներն ու
գործողությունները, որ մենք նկատում ենք Հոկտեմբերյան հեղափոխության
շրջանում, նրա հաղթանակից հետո, Հայրենական պատերազմի ընթացքում
և այժմ՝ մեր երկրում տեղի ունեցող տեխնիկայի բուռն վերելքի, տիեզերական
տարածությունների նվաճման ժամանակաշրջանում:

Լեզուն վերին աստիճանի զգայուն է և արձագանքում է տեղի ունեցող
սոցիալական, հասարակական, մշակութային կյանքի շատ փոփոխություն-
ների, դրանք արտացոլում է իր բառային կազմում:

Եթե համադրելու լինենք նաև պատմական, սոցիալական, աշխարհագրա-
կան տարբեր միջավայրում ապրող տարբեր ժողովուրդների լեզուները, ապա
կնկատենք նաև, որ այդ լեզուները նույնպես ցույց են տալիս ժողովուրդների
կյանքի միջև եղած տարբերությունները, կամ ավելի ճիշտ՝ արտացոլում են
այդ տարբերությունները: Լեզվաբանական գրականության մեջ հաճախ են լու-
սաբանվում այսպիսի փաստեր: Հյուսիսի ժողովուրդները ձյան մասին ունեն
բազմաթիվ բառեր և տարբերում են նոր եկած ձյունը վաղուց նստածից, հին
ձյունը այսպես ասած փափուկ ձյունից և այլն: Կամ էլ՝ Արևելքի ժողո-
վուրդներն ուղտը տարբեր բառերով են կոչում կամ տարբերում են նստած
ուղտը կանգնածից, կանգնած ուղտը՝ քայլողից և այլն:

Ամբողջ հարցն այն է, թե ի՞նչ մեկնաբանում տալ այդ փաստերին: Սե-
պիր-Ուորֆ հիպոթեզի ջատագովներն այս փաստերից այն եզրակացության են
հանգում, որ լեզուն իրենով պայմանավորում է մարդկանց կյանքը, ապրելա-
կերպը: Իհարկե, իր մերկապարանոց ձևով դա ամենևին էլ չի համապատաս-
խանում իրականությանը: Ավելի ճիշտ կլինի ասել, որ ժողովուրդների սոցիա-
լական, մշակութային, տնտեսական կյանքը արտացոլում են գտնում լեզվի մեջ:
Հետևաբար, ոչ թե լեզուն, թեկուզ նկատի ունենանք նրա իմաստային, լեքսի-
կական կողմն, այդ առումով պայմանավորում է մարդկանց սոցիալական,
մշակութային, տնտեսական կյանքը այլ՝ հակառակը: Այս կամ այն ժողովրդի
տնտեսական, սոցիալական, կուլտուրական կյանքի առանձնահատկություն-
ներն իրենց անմիջական արտացոլումն են գտնում տվյալ ժողովրդի լեզվի
իմաստային բովանդակության մեջ:

Սակայն ասել միայն այս, դեռ չի նշանակում տալ հարցի լրիվ պատաս-
խանը կամ միանգամայն մերժված համարել Սեպիր Ուորֆի հիպոթեզի համա-
պատասխան դրույթի եզրակացությունները: Այդ կապակցությամբ անհրաժեշտ
է նկատել հետևյալը:

Իրականության յուրացումը յուրաքանչյուր անհատի, յուրաքանչյուր նոր
սերնդի կողմից բարդ երևույթ է: Յուրաքանչյուր նոր սերունդ, ամեն մի նոր
անհատ իր ծննդյան առաջին իսկ օրից շրջապատող իրականությունը յուրաց-
նում է մի շարք ճանապարհներով: Այստեղ պետք է նկատի ունենալ անհատա-
կան փորձը, անհրաժեշտ է նշել տրամաբանական իմացությունը, իմացության
բարդ պրոցեսների բոլոր երևույթները և այդ բարդ պրոցեսում լեզվի դերը:
Մարդիկ շրջապատող իրականության մասին գաղափար են կազմում ոչ միայն
իրենց անհատական, անմիջական փորձի միջոցով, այլև յուրացնում են իրա-
կանությունը, մայրենի լեզվի այն բառային կազմի միջոցով, որ նրանք ժառան-
գել են իրենց ծնողներից:

Այս տեսակետից լեզուն իր կարևոր դերն է խաղում շրջապատող իրակա-
նության ճանաչման գործում, բայց այդ բոլորովին չի նշանակում, թե լեզվով է



որոշվում մարդկանց վերաբերմունքը դեպի շրջապատող աշխարհը: Լեզվի և
հասարակության, ժողովրդի պատմության փոխհարաբերությունը քննարկելիս
նախ և առաջ պետք է որոշակի տարբերություն դնել լեզվի իմաստային կողմի,
քերականական կառուցվածքի և հնչյունային կազմի միջև:

Լեզվի իմաստային կողմն արտացոլում է մարդկանց կյանքի պայման-
ները, ապրելակերպի առանձնահատկությունները և իր հերթին որոշակի, վերը
նշված իմաստով, ազդեցություն է թողնում մարդկանց վրա՝ շրջապատող
աշխարհում կողմնորոշվելիս:

Դրությունը բոլորովին փոխվում է, երբ խոսքը վերաբերում է լեզվի քե-
րականական կառուցվածքին: Հայտարարել, թե լեզվի քերականական կառուց-
վածքն անմիջականորեն կապված է հասարակության, ժողովրդի պատմության
հետ, նշանակում է, մեղմ ասած տուրք տալ վուլգար սոցիոլոգիզմին: Լեզվի քե-
րականական կառուցվածքը զարգանում է ոչ թե հասարակական երևույթների,
սոցիալական կյանքի երևույթների զարգացմանը համընթաց, այլ լեզվի ներ-
քին օրենքների համաձայն: Սակայն չպետք է ենթադրել, որ լեզվի քերակա-
նական կառուցվածքը ոչ մի առնչություն չունի ժողովրդի պատմության հետ:
Կապ գոյություն ունի, սակայն այն անմիջական չէ, միջնորդավորված է լեզ-
վի սեմանտիկայով, իմաստային կողմով:

Հայտնի է, որ որքան հարուստ է ժողովրդի սոցիալ-տնտեսական, մշակու-
թային կյանքը, այնքան ավելի զարգացման բարձր աստիճանի վրա է գտնվում
տվյալ ժողովրդի աբստրակտ մտածողությունը, տրամաբանական իմացությու-
նը, այդ իմացության տրամաբանական կառուցվածքը, իսկ վերջինս իր հեր-
թին անպայման ազդում է լեզվի բոլոր կողմերի, այդ թվում և լեզվի քերակա-
նական կառուցվածքի վրա: Ահա այս իմաստով նույնպես կարելի է կապ տես-
նել լեզվի քերականական կառուցվածքի և ժողովրդի պատմության,հասարա-
կության պատմության միջև:

Էլ ավելի մեծ վերապահումներ պետք է անել լեզվի և հասարակության
պատմության, ժողովրդի պատմության միջև եղած կապի մասին, երբ խոսքը
վերաբերում է լեզվի հնչյունային կողմին: Ինչպես և լեզվի քերականական կա-
ռուցվածքը, լեզվի հնչյունային կողմը զարգանում է լեզվի ներքին օրինաչա-
փությունների համաձայն և անմիջական ոչ մի առնչություն չունի հասարակու-
թյան պատմության հետ: Իհարկե, այստեղ ևս կարևոր է որևէ հասարակական
գործոն որևէ ժամանակաշրջանում իր դերը խաղալ լեզվի հնչյունային կողմի
վրա ունեցած իր ազդեցությամբ, բայց այդ ազդեցությունը դարձյալ տեղի
կունենա միջնորդավորված ձևով, լեզվի իմաստային կողմի, աբստրակտ մտա-
ծողության միջոցով և ոչ թե անմիջականորեն:

Քննադատելով լեզվաբանական հարաբերականության տեսությունը, ամե-
նևին էլ մենք մտադիր չենք այդ տեսության մի շարք կարևոր եզրակացու-
թյունները հերքել կամ մերժել շեմից: Պետք է սխալ համարել այդ տեսության
ծայրահեղ եզրակացությունները, ինչպես նաև միանման մոտեցումը, որ այդ
տեսության ներկայացուցիչները ցուցաբերում են լեզվի տարբեր կողմերի, կամ
էլ լեզվի և հասարակական տարբեր երևույթների միջև եղած փոխհարաբերու-
թյան նկատմամբ: Մինչդեռ իրականում տարբերակված մոտեցումը այս
հարցում կարող է իր օգտակար պտուղները տալ: Նախ և առաջ լեզվի և մտա-
ծողության կառուցվածքի, հասկացողությունների համակարգի միջև կապը,
որը բացարձակացված ձևով ներկայացնում են Սեպիր-Ուորֆի հիպոթեզի ներ-
կայացուցիչները, անպայման գոյություն ունի: Սակայն այս կապը պետք է դի-

տել ոչ որպես այդպիսի հարաբերակցություն, որտեղ լեզուն իրենով է պայմանավորում մարդկանց մտածողության տրամաբանական կառուցվածքը, հասկացողությունների համակարգը, այլ որպես այնպիսի հարաբերություն, որտեղ լեզուն այս կամ այն չափով ազդեցություն է թողնում մարդկանց հասկացությունների կազմավորման, ձևավորման վրա։

Այս հարցից պետք է տարբերել լեզվի ազդեցությունը մարդկանց վարվելակերպի վրա։ Դա չափազանց կարևոր հարց է և թերևս այս բնագավառում է, որ Սեպիր-Ուորֆի հիպոթեզի ներկայացուցիչներն որոշակի դրական նվաճումներ են կատարել թեկուզ և այն իմաստով, որ անվերապահորեն ընդգծել են լեզվի խոշոր ազդեցությունը մարդկանց վարվելակերպի վրա։ Նշենք նաև, որ ինքնըստինքյան այս հարցը նորություն չէ փիլիսոփայության պատմության, մարդկային մտքի պատմության մեջ։

Պետք է նկատել, որ այս բնագավառում մեզ մոտ քիչ բան է արված և հարցի դրական լուծումը, մասնավորապես այն բանի հետազոտումը, թե ինչ պայմաններում, ինչպիսի չափերով է լեզուն ազդում մարդկանց վարքագծի վրա, կարող է ունենալ կարևոր գիտական նշանակություն։

Բոլորովին այլ հարաբերության մեջ է գտնվում լեզուն աշխարհայացքի հետ, և դա մենք ընդգծում ենք, որովհետև Սեպիր-Ուորֆ հիպոթեզի ներկայացուցիչները դարձյալ այս հարցում ոչ մի տարբերակում չեն տեսնում և գտնում են, որ լեզուն իրենով պայմանավորում է ինչպես մտածողությունն ու մարդկանց վարքագիծը, այնպես էլ նրանց աշխարհայացքը։ Մինչդեռ իրականում դժվար է գտնել որևէ փաստ, որը խոսեր այս թեզի օգտին, ապացուցեր, թե լեզուն որևէ չափով կարող է պայմանավորել աշխարհայացքը։ Աշխարհայացքը, մարդկանց փիլիսոփայական հայացքները պայմանավորված են նրանց հասարակական կեցությամբ, և մարդկային մտքի պատմությունը, փիլիսոփայության պատմությունը վկայում է այն, որ ոչ մի անմիջական առնչություն չկա աշխարհայացքի և մարդկանց լեզվի բնույթի միջև։ Կարելի է փիլիսոփայության պատմությունից բազմաթիվ օրինակներ բերել և այժմ էլ գոյություն ունի այն, որ տարբեր լեզվով խոսող մարդիկ պատկանում են միևնույն աշխարհայացքին, իսկ միևնույն լեզվով խոսող մարդիկ ներկայացնում են տրամագծորեն հակադիր փիլիսոփայական աշխարհայացքներ։

Իհարկե այս հարցում լեզուն ինչ-որ նշանակություն ունի, բայց ամբողջ բանն այն է, թե ի՛նչ նշանակություն ունի։ Լեզուն ոչ թե կարող է իրենով, իր բնույթով պայմանավորել հասարակությանը, այս կամ այն անհատի աշխարհայացքը, այլ նպաստել այս կամ այն աշխարհայացքի տարածմանը։ Ինչպես և այլ բնագավառներում, այս ասպարեզում ևս լեզուն հանդես է գալիս որպես գործիք, որը կարող է այս կամ այն նպատակի համար ծառայել, բայց ոչ որպես աշխարհայացք ստեղծող, իր բնույթյամբ աշխարհայացք պայմանավորող ինչ-որ երևույթ։

Այսպիսով, լեզուն լինելով հասարակական երևույթ, կարևոր դեր է խաղում հասարակության կյանքի տարբեր բնագավառներում, և լեզվի ու հասարակական կյանքի երևույթների, հասարակության, ժողովրդի պատմության երևույթների միջև եղած կապը բավականին բազմազան է և ոչ միշտ ուղղակի։

# ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԻ ՎԱՐՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ

Ս. ՊԱՊՅԱՆ

*ՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ։ Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՄԱՍԻՆ։ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՃՇՄԱՐՏԱՑԻՈՒԹՅՈՒՆԸ։ ԴԱՍԱԽՈՍԸ ԵՎ ԼՍԱՐԱՆԸ։ ՏԻՐԱՊԵՏԵԼ ՀՌԵՏՈՐԱԿԱՆ ԱՐՎԵՍՏԻՆ։ «ՍՈՒՐ» ՀԱՐՑԵՐԻ ՄԱՍԻՆ։*

Մասսաների քաղաքական ուսուցման ու դաստիարակության խնդիրները պահանջում են առավելապես օգտագործել գաղափարական աշխատանքի բոլոր միջոցներն ու ձևերը, այդ թվում բանավոր պրոպագանդան, որը քաղաքական ներգործության կարևորագույն միջոցներից է։ Չնայած այն բանին, որ մեր օրերում մամուլը, ռադիոն ու հեռուստատեսությունը մասսաների վրա գաղափարապես ներգործելու հսկայական հնարավորություններ ունեն, այնուամենայնիվ, պրոպագանդիստների բանավոր ելույթները քաղաքականության ու գիտության, մեր երկրի միջազգային ու ներքին դրության հրատապ հարցերի շուրջ՝ մշտապես մեծ հետաքրքրություն են առաջ բերում։ Անմիջաբար և աշխուժորեն հաղորդակցվելով լսարանի հետ, պրոպագանդիստը կատարում է կուսակցության պատվավոր հանձնարարությունը։

Մեր կուսակցությունը, ինչպես նաև միջազգային ողջ կոմունիստական շարժումն ամենատարբեր պայմաններում պրոպագանդա մղելու և այդ գործը կազմակերպելու շատ արժեքավոր փորձ են կուտակել։ Մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների աշխատություններում, ՍՄԿԿ և եղբայրական կուսակցությունների որոշումներում հարուստ նյութ կա կոմունիստական պրոպագանդայի տեսության ու պրակտիկայի մասին։

Պրոպագանդիստական մեր այսօրվա գործունեության համար առանձնակի նշանակություն ունի ՍՄԿԿ XXIII համագումարը, որի նյութերում ու որոշումներում ընդհանրացված է կուսակցության երկարամյա փորձը գաղափարական աշխատանքի բնագավառում և նշված են արդի պայմաններում այն կատարելագործելու միջոցները։ Համագումարը խնդիր դրեց նոր աստիճանի բարձրացնել պրոպագանդան և ագիտացիան, որպեսզի կոմունիստական շի-

նարարության վիթխարի ծրագրի իրականացման գործում դրանք ավելի գործուն զենք դառնան:

Պրոպագանդան ինքնին նոր գաղափարներ, հայացքներ չի ստեղծում: Սակայն, առանց պրոպագանդայի, բառիս ամենալայն իմաստով, ոչ մի գաղափար, ոչ մի տեսություն ու հայացք չի կարող հասարակական նշանակություն ստանալ (ըստ Մարքսի հայտնի արտահայտության), չի կարող տիրել մասսաներին և նյութական ուժ դառնալ:

Կոմունիստական կուսակցությունը հոգում է սովետական մարդկանց գիտակցականության բարձրացման, մարքսիզմ-լենինիզմի գաղափարները մասսաներին ավելի խոր, ստեղծագործաբար հաղորդելու վերաբերյալ: Պրոպագանդան և ագիտացիան մասսաների շրջանում մարքսիստական-լենինյան տեսությունը տարածելու և կյանքի առաջադրած խնդիրների լուծման համար աշխատավորներին մոբիլիզացնելու կարևորագույն միջոցներից են:

Կոմունիզմին նվիրված ակտիվ ու կայուն մարտիկներ դաստիարակելու, մարքսիստական-լենինյան գաղափարները համակողմանիորեն պրոպագանդելու գործում կարևորագույն նշանակություն ունի այդ գաղափարների խոր պրոպագանդումը: Սովետական ժողովուրդը, սոցիալիստական մյուս երկրների ժողովուրդները համաշխարհային-պատմական հաղթանակներ են ձեռք բերել այն բանի շնորհիվ, որ հավատարիմ են եղել լենինյան պատվիրաններին, անձնվիրաբար պայքարել են հանուն դրանց կենսագործման: Նկարագրել այդ պայքարը, ցույց տալ նրա արդյունքները՝ նշանակում է նպաստել մասսաների կողմից մարքս-լենինյան ուսմունքի յուրացմանը:

Լենինի աշխատություններում բացահայտված և գիտականորեն հիմնավորված են կոմունիստական պրոպագանդայի հիմնական սկզբունքները՝ կուսակցականությունը, գաղափարական-տեսական բարձր մակարդակը, ճշմարտացիությունը (օբյեկտիվությունը), կյանքի հետ կապված լինելը, կոնկրետությունը, մատչելիությունը (հանրամատչելիությունը): Կուսակցականությունն այն հիմնական պահանջն է, որ ներկայացվում է պրոպագանդային և ընդհանրապես քաղաքական աշխատանքին, առանց որի չի կարող կոմունիստական պրոպագանդա լինել:

Կուսակցականության հետ անխզելիորեն կապված են պրոպագանդայի գաղափարայնությունը և նրա տեսական բարձր մակարդակը: Լենինը գրել է, որ առանց պարզ, լավ մտածված, իդեական բովանդակության ագիտացիան վերասերվում է ֆրազյորության: Նա նշել է, որ «ամենակարևորը դասախոսությունների գաղափարական-քաղաքական ուղղությունն է» (Երկեր, հատ. 15, էջ 588): Բարձր գաղափարայնությունը և սկզբունքայնությունը, խոր գիտականությունը միշտ եղել են մեր պրոպագանդայի բնորոշ հատկանիշները, ավելին՝ բնորոշել նրա էությունը:

Բուրժուական պրոպագանդան, ձգտելով շփոթել աշխատավորների մտքերն ու հոգին, ջանում է նրանց մեջ հարուցել ստոր բնազդներ, օգտագործել մասսաների ամենամութ նախապաշարմունքները: Շովինիստական ու նացիոնալիստական նախապաշարմունքների գրգռում, լկտիացած ռասիզմ ու տարբեր կրոնների նկատմամբ անհանդուրժողականություն, «սուպերմենի»՝ այնպիսի գերմարդու պաշտամունք, որին թույլատրված է ամեն բան անել, որը «բարձր» է կանգնած մարդկային վարվեցողության հանրաճանաչ նորմերից — ահա իմպերիալիստական պրոպագանդայի «գաղափարական» էությունը, նրա «բարոյականությունը», իսկական դեմքը:



Վ. Ի. Լենինը խորապես մշակել և հիմնավորել է կոմունիստական պրոպագանդայի ճշմարտացիության (օբյեկտիվության) սկզբունքը: Նա ցույց է տվել, որ իսկական օբյեկտիվությունն ընդհանուր ոչ մի բան չունի բուրժուական փարիսեցիական օբյեկտիվիզմի հետ: Իսկական օբյեկտիվությունը, ճշմարտացիությունն անխզելիորեն կապված են առաջավոր դասակարգի կուսակցականության հետ: Մեր կուսակցության ագիտացիոն-պրոպագանդիստական գործունեության նկատմամբ մասսաների վստահությունն առաջացել ու ամրապնդվել է, ամենից առաջ, այն բանի շնորհիվ, որ նրա այդ գործունեության խոր ճշմարտացիությունը զուգակցված է մյուս հատկությունների հետ:

Պրոպագանդայի կազմակերպման գործում կենտրոնական դերը դասախոսինն է, զեկուցողինը, կոնսուլտանտինն ու պրոպագանդիստինը: Նրանք, նրանց գիտելիքներն ու մեթոդական վարպետությունն են բնորոշում դասախոսության կամ պարապմունքի որակը, ունկնդիրների վրա ներգործելու ուժը: Որպես դասախոսներ ու պրոպագանդիստներ մեզ մոտ հանդես են գալիս մեր հասարակության առաջավոր մարդիկ: Լավ դասախոսն ու պրոպագանդիստը ցանկալի հյուր են ուզած կոլեկտիվում:

Ինչպես ցույց է տալիս փորձը, գոհունակությամբ չեն ընկալվում այն ընկերների ելույթները, որոնք նախընտրում են կարդալ պատրաստի տեքստերը, չեն կարողանում պոկվել թեզիսներից ու կոնսպեկտից: Տվյալ դեպքում խանգարվում է լսարանի ու պրոպագանդիստի կենդանի կապը: Նա հիմնականում զրկվում է ունկնդիրների վերաբերմունքին հետևելու և նրանց վրա ազդելու հնարավորությունից: Կարդալով պատրաստի տեքստը, պրոպագանդիստը դադարում է ակտիվ մտածելուց, չի կարողանում իր անմիջական զգացմունքներն արտահայտել դիմախաղով ու շարժուձևերով: Գրի առնված ճառը, անշուշտ, ավելի հարթ ու «մշակված» է լինում, բայց հենց այդ պատճառով այն ավելի դժվար է ընկալվում և քիչ հուզում ունկնդիրներին: Պրոպագանդիստի ինքնուրույնությունը, ասես, չքանում է, նվազում հետաքրքրասիրությունն ելույթի բովանդակության նկատմամբ: Տեքստը կարդալիս հաճախ հոգեբանական պատնեշ է առաջանում, անջրպետ ստեղծվում հռետորի և լսարանի միջև, խոչընդոտում շարադրվող նյութի պատշաճ ընկալումը:

Բայց, եկեք, ծայրահեղության մեջ չընկնենք: Նախապես պատրաստված տեքստի ընթերցումն երբեմն արդարացվում է: Դա լինում է այն դեպքերում, երբ զեկուցողը շարադրում է խիստ պաշտոնական որևէ նյութ կամ գիտական բարդ հարց: Մյուս բոլոր դեպքերում նախընտրելի է աշխույժ, անկաշկանդ խոսակցական լեզուն, որը և կարող է կենդանի կապ ստեղծել պրոպագանդիստի ու լսարանի միջև: Դա առավել ևս վերաբերում է հեռուստատեսային ելույթներին, որոնց ընթացքում հռետորը, տեխնիկայի ընձեռած հնարավորությունների շնորհիվ «ներխուժում է» յուրաքանչյուր տուն, ընտանիք, դառնում ընտանեկան սրտառուչ խոսակցության մասնակից: Հիրավի, անհնար է պատկերացնել, որ մեզնից որևէ մեկն իր հարազատների ու ընկերների հետ խոսի նախապես պատրաստված տեքստով: Ճիշտ են վարվում այն պրոպագանդիստները, որոնք հրաժարվում են տպագիր տեքստը միալար կարդալուց: Այդպիսիք, սակայն, պետք է առանձնապես հետևեն շարադրման մատչելիության ու պարզությանը, թույլ չտան որևէ աղավաղում, պարբերության կամ ձևակերպման անճշտություն: Լավ կլիներ, եթե պրոպագանդիստն առաջնորդվեր հայտնի դրույթով՝ քանի որ դու լսարան ես մտել, ամբիոն բարձրացել,

պետք է նոր գիտելիքներով հարստացնես ունկնդիրներին, օգնես նրանց ըմբռնելու շոշափվող թեման, նոր մտքեր հուշես։

Պրոպագանդիստը չպետք է ձգտի անպայման խոսել «ամեն ինչի մասին». նա պետք է հանգամանորեն հիմնավորի թեմայի գլխավոր գաղափարը, ճիշտ վերլուծի այն, հետևություններ անի և ընդլայնի ու հարստացնի ունկնդիրների աշխարհայացքը։ Հասկանալի է, որ պրոպագանդիստն այս ամենին կարող է հասնել իր գաղափարական ու կուլտուրական մակարդակի բարձրացմամբ, հռետորական ունակությունների կատարելագործմամբ։ Այդպիսի հատկությունների շնորհիվ բազմաթիվ դասախոսներ ու պրոպագանդիստներ մեծ հաջողություններ են ձեռք բերել և արժանի հարգանք են վայելում ունկնդիրների շրջանում։ Նրանց թվին են պատկանում ընկերներ Գ. Սևակը, Ռ. Զարյանը, Գ. Սարգսյանը, Մ. Շալչյանը, Ս. Հարությունյանը, Ա. Պողոսյանը, Վ. Մարտինովը (Երևան), Գ. Քալաշյանը (Լենինական), Վ. Օրդյանը (Կիրովական), Գ. Մանուկյանը (Գորիսի շրջան), Ա. Խաչատրյանը (Կամոյի շրջան), Վ. Գրադովան (Կալինինոյի շրջան), Կ. Մարգարյանը (Հոկտեմբերյանի շրջան), Ս. Բայրամովը (Ամասիայի շրջան) և շատ ուրիշներ։

Պրոլետարական հեղափոխության մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինը միշտ ընդգծում էր, որ պետք է հոգալ պրոպագանդայի գաղափարայնությունը շարադրման աշխուժության հետ հմտորեն զուգակցելու մասին։ Այժմ ունկնդիրներն ավելի ու ավելի լուրջ պահանջներ են ներկայացնում պրոպագանդիստին։ Նրանք պարզորեն նկատում են սխալներն ու անճշտությունները։ Ուստի, մենք՝ պրոպագանդիստներս, պետք է համառորեն կատարելագործենք մեր խոսքի կուլտուրան, լսարանի վրա ներազդելու մեր կարողությունը։ Չի կարելի մոռանալ ռուս մեծ քննադատ Վ. Գ. Բելինսկու այն հիանալի ասույթը, թե ճիշտ խոսելը և լավ խոսելը ամենևին էլ նույն բանը չեն։ Կարող ես քերականորեն ճիշտ խոսել (դա, անշուշտ, շատ կարևոր է), բայց այնուհանդերձ մտքերդ ունկնդիրները չտիրապետեն և լսարանի սեփականությունը չդառնան։

Հրապարակային ամեն մի ելույթի նախապատրաստումը նրա հաջողության անհրաժեշտ պայմանն է։ Չէ որ հրապարակային խոսքն ունի իր առանձնահատկությունները։ Հռետորն ստիպված է խոսել առանց գրառումների (նկատի ունենք միայն խոսող, և ոչ տեքստը կարդացող պրոպագանդիստին)։

Հրապարակային ելույթը յուրօրինակ արվեստ է։ Վլադիմիր Իլյիչ Լենինը այսպես է բնութագրել նրա առանձնահատկություններն ու խնդիրները. «Յուրաքանչյուր պրոպագանդիստի ու յուրաքանչյուր ագիտատորի հմտությունը հենց այն է, որպեսզի լավագույն կերպով ներգործի տվյալ լսարանի վրա, նրա համար հայտնի ճշմարտությունը դարձնելով ըստ հնարավորին ավելի համոզիչ, ըստ հնարավորին ավելի դյուրին յուրացվող, ըստ հնարավորին ավելի ակներև ու հաստատ տպավորվող» (Երկեր, հատ. 17, էջ 418)։

Պրոպագանդիստներից ոմանք, հանդես գալով բանվորների կամ կոլտնտեսականների առջև, երբեմն թերագնահատում են իրենց ունկնդիրների մակարդակը, սկսում պարզունակեցնել իրենց խոսքը, այն դարձնելով չափազանց տարրական ու մակերեսային։ Անցանկալի է նաև հռետորի չափից ավելի ուսուցողական խոսելաձևը։ Ունկնդիրները, որպես կանոն, անտեսում են այն հռետորին, որի ելույթը խրատաբանությամբ է տոգորված։ Դասախոսը, պրոպագանդիստը, ագիտատորը ոչ մի րոպե չպետք է կորցնի կապը լսարանի հետ։ Ուշադիր հետևելով ունկնդիրների վերաբերմունքին, պրոպագանդիստը կնկատի, թե տվյալ պահին ինչն է առանձնապես հուզում լսարանին։



Հռետորական վարպետությունը պրոպագանդիստի տեսական բարձր գրագիտությունն է, բովանդակալից զեկուցում պատրաստելու կարողությունը, մեթոդական պատրաստվածությունը (որը թույլ է տալիս թեմայի բովանդակությունը մատչելի դարձնել ունկնդիրների համար), բոլոր հանգամանքներում լսարանի ուշադրությունը գրավել, նրան հետաքրքրել և ցանկացած ուղղությամբ նրա վրա ազդելու ունակությունը։

Հրապարակային ելույթը ցանկալի արդյունք չի տա, եթե հռետորի խոսքում չզգացվի անկեղծության շեշտը։ Մարդիկ զգայուն են խոսքի նկատմամբ։ Երբ որևէ ընկեր խորհրդակցությունում ոչ-պերճախոս ելույթ է ունենում, բայց խոսում է անկեղծ, հուզվելով, նրան լարված լսում են և արձագանքում։ Մի ուրիշը ճառում է ճոռոմաբար, համապատասխան մեջբերումներ է կատարում, բայց նրան լսում են ու մտածում՝ ինչի՞ մասին է սա խոսում։

Պրոպագանդիստական աշխատանքում առանձնահատուկ նշանակություն ունեն, այսպես կոչվող, «սուր» հարցերին տրված ճիշտ, կուսակցականորեն շիտակ պատասխանները։ Այդպիսի հարցերը հաճախ են տրվում։ Երբեմն դժվար է լինում միանգամից պատասխանել դրանց։ Բայց, ճիշտն ասած, բոլորովին անբացատրելի հարցեր չկան։ Պատրաստված և փորձված զեկուցողը կարող է սպառիչ պատասխաններ տալ ունկնդիրներին հետաքրքրող հարցերին։ Աշխատավորների արծարծած հարցերից խուսափել, նշանակում է կամա թե ակամա կեղծ մեկնաբանությունների հնարավորություն ստեղծել։ Ահա թե ինչու պետք է ուղղակի պատասխանել ունկնդիրների առաջադրած հարցերին և, եթե հարկ լինի, վեճի բռնվել ամբողջ կոլեկտիվի առջև, ապացուցել տվյալ հայացքի սնանկությունը։

Վերջերս (ռուսերեն և ադրբեջաներեն լեզուներով աշխատող պրոպագանդիստների հանրապետական սեմինարում) ես հանդես եկա «ՍՍՀՄ-ում կոմունիստական շինարարության միջազգային նշանակությունը» թեմայով դասախոսությամբ, որն աշխույժ հետաքրքրություն հարուցեց լսարանում։ Ունկընդիրները բազմաթիվ հարցեր տվեցին սոցիալիզմի տարբեր երկրներում աշխատավորների կենսամակարդակի, առավել զարգացած կապիտալիստական երկրների միջին կենսամակարդակից սոցիալիստական երկրների դեռևս որոշ չափով ետ մնալու պատճառների մասին։ Ներկաներից մեկը հարցրեց. ինչո՞ւ մեր երկիրը, որը հիսուն տարի է ինչ ընթանում է սոցիալիզմի ուղիով, բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի թողարկմամբ ետ է մնում ԱՄՆ-ից։ Պատասխանելով այդ հարցին, ես հիշեցրի, որ Ամերիկայի Միացյալ Նահանգներն ինդուստրիայի զարգացման ներկա մակարդակին են հասել արդյունաբերական հեղաշրջումից հետո անցած գրեթե 120 տարում, մինչդեռ, մեր երկրին ընդամենը 40 տարի է, ինչ ձեռնամուխ է եղել ծանր արդյունաբերության զարգացմանը։

Բացի այդ, ես հիշեցրի նաև, որ Միացյալ Նահանգների տերիտորիայում ավելի քան հարյուր տարում պատերազմական գործողություններ տեղի չեն ունեցել, մինչդեռ, մեր հայրենիքը մարդկային ու նյութական խիստ ծանր կորուստներ է կրել առաջին համաշխարհային և քաղաքացիական պատերազմներում և առավել ևս՝ երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ։ Ուրիշ ամեն մի երկիր, այդպիսի հսկայական կորուստներ կրելուց կզրկվեր իր տնտեսական ու քաղաքական անկախությունից։ Միայն սոցիալիստական հասարակարգը կարող էր սովետական ժողովրդին հնարավորություն ընձեռել մոբիլիզացնելու իր բարոյական, նյութական ու մյուս կարողությունները և

ապահովելու Սովետական Միության համաշխարհային-պատմական հաղթանակը միջազգային ռեակցիայի միացյալ ուժերի դեմ մղված պայքարում։

Արևմտյան տերությունների քայքայիչ գործունեության և նրանց կազմակերպած տնտեսական բլոկադայի ծանրագույն պայմաններում սովետական պետությունը կարողացավ պատմական կարճ ժամանակամիջոցում բուժել այն վերքերը, որ թշնամին հարուցել էր իր տնտեսությանը և աննախընթաց հաջողությունների հասնել էկոնոմիկայի, կուլտուրայի բարգավաճման, աշխատավորների կենսամակարդակի բարձրացման գործում։ Այդ են վկայում Սովետական Միության 1966—1970 թվականների ժողովրդական տնտեսության զարգացման նոր վիթխարի պլանները։

Միջազգայնագետ պրոպագանդիստներին հաճախ հարցեր են տալիս Սիրիայի, Արաբական Միացյալ Հանրապետության, Ալժիրի և այլ երկրների զարգացման ներքին քաղաքական գծի, Գերմանիայի վերամիավորման նկատմամբ Սովետական Միության դիրքի, որոշ կոմունիստական կուսակցությունների փոխհարաբերությունների մասին։ Վերջերս շատ հարցեր են տրվում, մասնավորապես, սովետա-չինական հարաբերությունների և չինական ղեկավարների հակասովետական կուրսի մասին։ Պարզ է, որ պրոպագանդիստն ամենևին իրավունք չունի անտեսելու ունկնդիրների այդպիսի հարցերը։ Ամեն մի առաջին հայացքից «պարզունակ» և «տարօրինակ» թվացող հարցին, համբերատարությամբ, հանգամանորեն պատասխանելը պրոպագանդիստի ու ագիտատորի առաջնահերթ պարտականությունն է։

Կալինինոյի շրջանի պրոպագանդիստների համար պատմական գիտությունների թեկնածու Տ. Դրամփյանի կարդացած՝ «Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը մարդկության զարգացման վճռական գործոնն է» թեմայով դասախոսությունն ավարտվելուց հետո հարց տրվեց, թե ինչու սոցիալիստական որոշ պետությունների միջև տարաձայնություններ գոյություն ունեն։ Լսարանի հետ հաստատված կապից զգացվում էր, որ հարցը հետաքրքրում է շատերին։ Եվ միանգամայն ճիշտ վարվեց ընկ. Դրամփյանը, որ զրույց սկսեց այդ թեմայի շուրջ։

Հարցերին տրված պատասխանները պետք է պարզ և հանգամանալի լինեն։ Նախընտրելի է, եթե հռետորը նախապես մտածի այն հարցերի շուրջ, որոնց, հավանաբար, ինքն ստիպված կլինի պատասխանել։ Բայց կարող է պատահել, որ պրոպագանդիստը տվյալ հարցին նախապատրաստված չլինելու պատճառով չկարողանա պատասխանել։ Դա պետք է ազնվորեն և ուղղակի խոստովանել։ Այդպես վարվեց դասախոս Ս. Կ. Սիմոնյանը, միջազգային դրության վերաբերյալ դասախոսության ժամանակ՝ Կոնգոյում քաղաքական ուժերի փոխհարաբերության մասին տրված հարցերին պատասխանելիս։ Լսարանը նրան ճիշտ հասկացավ և գոհ մնաց նրա ազնվությունից ու շիտակությունից։ Երբեք չպետք է ձգտել մի կերպ «ջրից չոր դուրս գալ»։ Երբ որոշ պրոպագանդիստներ փորձում են պատասխանել այն հարցերին, որոնց վերաբերյալ նրանց գիտելիքներն անբավարար են, դա չափազանց անբարենպաստ տպավորություն է թողնում ունկնդիրների վրա։

Ունկնդիրների նկատմամբ պրոպագանդիստի վերաբերմունքը շատ բաներից է երևում։ Մեծ դեր են խաղում թե՛ նրա արտաքին տեսքը, թե՛ վարվելակերպի պարզությունն ու համեստությունը։ Չէ՛ որ եթե պրոպագանդիստը հարգում է իր ունկնդիրներին, երբեք նրանց մոտ չի գա ճմրթված հագուստով, զրույցի և պարապմունքի չի շտապի վերջին րոպեներին կամ, առավել ևս, չի



տուշանա։ Լավ կլինի, եթե պրոպագանդիստը մի քիչ շուտ գա, ծանոթանա ունկընդիրների հետ, մի հայացք գցի իր «աշխատավայրի» վրա, համոզվի, որ ամեն ինչ պատրաստ է։ Շատ կարևոր հանգամանք է նախապես «տրամադրվելը», առաջիկա զրույցի առնչությամբ հոգեպես վերափոխվելը, ողջ ուշադրությունը զրույցի բովանդակության վրա կենտրոնացնելը։

Պրոպագանդիստը պետք է ուշադիր հետևի այն բանին, թե լսարանն ինչպես է ընդունում իր ելույթը և զրույցը վարելիս անհրաժեշտ ուղղումներ ու փոփոխություններ մտցնի։ Եթե նա նկատում է, որ լսարանը ճիշտ է ընկալում իր խոսքերը, հարկ չկա դրանք պարզաբանելու, ուրեմն, կարելի է անցնել հաջորդ հարցին։ Կամ, ընդհակառակը, լսարանը վստահ չէ, որ պրոպագանդիստի ասածը ճիշտ է և իր տարակուսանքը կամ անհամաձայնությունն է հայտնում։ Ուրեմն, հարկ է, կանգ առնել շոշափվող հարցի վրա և ավելի մանրամասն, մատչելի ձևով բացատրել այն։ Ենթադրենք, թե ունկնդիրների զգալի մասը գրառում է լսածը, ուրեմն պետք է հաշվի առնել դա և թուլացնել խոսելու տեմպը կամ նույնիսկ կրկնել այս կամ այն միտքն ու ձևակերպումը։ Վերջապես, եթե նրա դատողությունների ընթացքին համապատասխանող որևէ ռեպլիկ է արվում, կարելի է այն օգտագործել շարադրող միտքն ավելի հանգամանորեն բացատրելու համար։

Լսարանը զգայուն է հռետորի հոգեվիճակի ու տրամադրության հանդեպ։ Ահա թե ինչու հաջողության հասնելու համար շատ կարևոր է պրոպագանդիստի ներքին խոր համոզմունքն իր շարադրած դրույթների ճշտության նկատմամբ։ Այդպիսի համոզմունքի բացակայության դեպքում չի կարելի հանդես գալ տվյալ հարցի շուրջ, պետք է շարունակել դրա ուսումնասիրումը, զրույցի ընթացքում չպետք է թույլ տալ որևէ երկընտրանք։

Բանավոր պրոպագանդայում պակաս դեր չեն խաղում նաև խոսքի արտահայտչականությունը, լրացուցիչ նյութերի, գեղարվեստական գրականության ու կինոֆիլմերի հմուտ օգտագործումը։ Ընդամին այս, ինչպես նաև այլ միջոցների օգտագործումը, ցանկալի է սովորել առաջավոր պրոպագանդիստների և դասախոսների փորձից։

Պրոպագանդիստական վարպետությանը, բանավոր ելույթի նախապատրաստման մեթոդիկային տիրապետելու գործին մեծ օգնություն է ցույց տալիս՝ Լենինի զրույցների, ճառերի ու զեկուցումների ուսումնասիրումը։ Շնորհիվ այն բանի, որ Լենինի հոդվածների և բանավոր ելույթների նախագծումները, պլաններն ու կոնսպեկտները հրապարակվել են, մենք հնարավորություն ենք ստացել ասես լինելու հեղափոխության հանճարեղ առաջնորդի ստեղծագործական լաբորատորիայում, տեսնելու, թե նա ինչպիսի խնամքով և բարեխղճությամբ է պատրաստվել իր ելույթներին։

Ի՞նչը կարող է ավելի հաճելի լինել, քան այն, երբ ունկնդիրներն աշխատանքային օրվա ընթացքում հոգնած, բայց աշխույժ զրույցից գոհ և ինչ-որ չափով աշխուժացած, շնորհակալություն են հայտնում դասախոսին, զեկուցողին, պրոպագանդիստին կամ ագիտատորին։

Պատվավոր և պատասխանատու են պրոպագանդիստի խնդիրները։ Միայն կյանքից սովորելով, կյանքը խորապես ճանաչելով, մենք կարող ենք պրոպագանդան հասցնել կուսակցության պահանջների մակարդակին՝ ավելի հաջող լուծելու աշխատավորների կոմունիստական գիտակցականության բարձրացման խնդիրը, որ առաջադրել է ՍՄԿԿ XXIII համագումարը։

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

# ԱՇԽԱՏԱՆՔԻ ԳԻՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ ՆՇԱՆԱԲԱՆՈՎ

*Ժամանակակից գիտատեխնիկական պահանջներին համապատասխան աշխատանքի և արտադրության գիտական կազմակերպումը ժողովրդատնտեսական այն առաջնահերթ խնդիրներից մեկն է, որ ՍՄԿԿ XXIII համագումարը դրել է արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի և էկոնոմիկայի այլ ճյուղերի աշխատողների առաջ։ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման առթիվ համագումարի ընդունած բանաձևում ասված է, որ ձեռնարկությունների տնտեսական օրգաններն ու կուսակցական կազմակերպությունները պետք է համառորեն վարեն բանվորական ուժի առավել ռացիոնալ օգտագործման, աշխատանքի գիտական կազմակերպման լայն ներդրման կուրս։*

*Տեխնիկայի զարգացման մակարդակից աշխատանքի կազմակերպման ետ մնալը լրջորեն արգելակում է արտադրության զարգացումը, մեծ վնաս հասցնում ժողովրդական տնտեսությանը և հանգեցնում նյութական ու աշխատանքային ռեսուրսների ոչ-ռացիոնալ օգտագործման, կասեցնում աշխատանքի արտադրողականության աճն ու իջեցնում արտադրության արդյունավետությունը։*

*Ներկայումս հատկապես ակտուալ են հնչում Վ. Ի. Լենինի ցուցումները աշխատանքի կազմակերպման սիստեմատիկ բարելավման մասին՝ օգտագործելով այդ բնագավառում գիտության ու տեխնիկայի բոլոր արժեքավոր նվաճումները։ Լենինը նշել է, որ սովետական իշխանության համար հատկապես աշխատանքի գիտական կազմակերպումն է ամենագլխավոր, արմատական և հրատապ խնդիրը ողջ հասարակական կյանքում։*

*Աշխատանքի և արտադրության գիտական կազմակերպումը հիմնվում է տեխնիկայի ու էկոնոմիկայի բոլոր ռեզերվների, բոլոր նվաճումների խոր, կոմպլեքսային օգտագործման վրա։*

*ԱԳԿ-ի մեթոդների մշակումն ու կիրառումը հիմնվում են տեխնիկական նոր բազայի, աշխատավորների կուլտուր-տեխնիկական բարձր մակարդակի վրա, ինժեներա-տեխնիկական աշխատողներից պահանջում են չսահմանափակվել ընթացիկ գործերի շրջանակներով, աշխատել ստեղծագործաբար, լինել նախաձեռնող, անընդհատ ընդլայնել գիտական մտահորիզոնը, խորապես ըմբռնել աշխատանքի կազմակերպման և արտադրության կառավարման հարցերը։*

*Աշխատանքի գիտական կազմակերպման մեթոդների կենսագործումը կընդլայնի արտադրության ծավալը, կբարձրացնի շահութաբերությունը, կապահովի հիմնական ֆոնդերի հատուցումը։ Պլանավորման նոր սիստեմն ու տնտեսական խթանումը հնարավորություն են ընձեռում կիրառելու աշխատանքի գիտական կազմակերպման միասնական սիստեմ՝ սկսած աշխատատեղից, տեղամասից, արտադրամասից մինչև ամբողջ ձեռնարկությունը։ ԱԳԿ-ի հաջողությունները կապահովվեն միայն այնտեղ, ուր գործը գտնվում է կուսակցական կոմիտեների և բյուրոների ուշադրության կենտրոնում։ Ուստի, պատահական չէ, որ ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965) պլենումի որոշման մեջ հատկապես ընդգծվեցին կուսակցական կազմակերպությունների կոնկրետ անելիքները՝ ժողովրդական տնտեսության մեջ հայրենական և արտասահմանյան գիտության ու տեխնիկայի, աշխատանքի գիտական կազմակերպման նորագույն նվաճումները ներդնելու գործում։*

*Երևանի կուսակցական կազմակերպությունները, արդյունաբերական ձեռնարկությունները պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին փոխադրվելու կապակցությամբ, մոտիկից զբաղվեցին աշխատանքի գիտական կազմակերպմամբ։ ԱԳԿ-ն ավելի ու ավելի գրավեց կուսակցական և արհմիութենական օրգանների, տնտեսական ղեկավարների, լայն հասարակայնության ուշադրությունը։ Սկսեց անընդմեջ ավելանալ աշխատանքը գիտականորեն կազմակերպող գործարանների ու ֆաբրիկաների թիվը։*

*Այժմ կարևոր է նոր մեթոդներով աշխատող ձեռնարկությունների կուտակած փորձի ուսումնասիրությունը։ Ընդ որում, խոսքը ո՛չ միայն տնտեսավարման փորձի մասին է, որը, ինքնըստինքյան, հույժ կարևոր է, այլև նոր պայմաններում կուսակցական աշխատանքի, կուսակցական կոմիտեների ու սկզբնական կազմակերպությունների գործունեության մասին։*

*Ուսանելի է, օրինակ, Երևանի ժամացույցի գործարանի կուսակցական կազմակերպության աշխատանքի փորձը։ Գործարանի կուսակցական կազմակերպությունն ու ադմինիստրացիան կոնկրետ միջոցներ են մշակել արտադրական ֆոնդերի օգտագործման արդյունավետության բարձրացման, տնտեսական հաշվարկի արմատավորման, շահութաբերության ավելացման և աշխատանքի գիտական կազմակերպման ուղղությամբ։ Նրանք նոր պայմաններում կարողացան գործարանի բանվորներին լայնորեն ընդգրկել արտադրության կառավարման ոլորտը, առավել չափով օգտագործել կոլեկտիվի անդամների նախաձեռնությունը։ Հարյուրավոր բանվորներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ ու ծառայողներ այժմ մասնակցում են տնտեսական վերլուծման բյուրոյի, տեխնիկական նորմավորման, մշտապես գործող արտադրական խորհրդակցության աշխատանքներին։*

*Իր գործունեությունը զգալի չափով վերակառուցել է նաև կուսակցական կոմիտեի նախաձեռնությամբ ստեղծված աշխատանքի գիտական կազմակերպման բաժինը։ ԱԳԿ-ի պլանները կազմելիս, նա սկսեց հաշվի առնել արտադրության շահութաբերության բարձրացման հետ կապված բոլոր գործոնները, որոնց առաջներում երբեմն պատշաճ ուշադրություն չէր նվիրվում կամ բոլորովին անտեսվում էին։ Գործարանի կուսակցական կոմիտեն, ուսումնասիրելով գործի վիճակը, հավանություն տվեց արտադրության գիտական վարման միջոցառումներին և խիստ վերահսկողություն սահմանեց դրանց*

կենսագործման նկատմամբ: Հատուկ սեմինարներ են կազմակերպված գոր-
ծարանի արտադրամասերի, բաժինների և ծառայությունների, ինչպես և
ԱԳԿ-ի մշակմամբ զբաղվող ստեղծագործական բրիգադների համար: Աշ-
խատանքի գիտական կազմակերպման հարցերը քննարկվում են արտադրա-
մասերի կուսակցական կազմակերպությունների դռնբաց ժողովներում և բյու-
րոների նիստերում: Կոմունիստները մասսայական-քաղաքական լայն աշխա-
տանք են ծավալել ԱԳԿ-ի պլանները պրոպագանդելու համար, օգտագործե-
լով բանավոր և դիտողական ագիտացիայի միջոցները: Նրանք համոզիչ փաս-
տերով բացատրում են, թե ձեռնարկությանը ինչ է տալիս աշխատանքի գի-
տական կազմակերպումն ընդհանրապես և նրա յուրաքանչյուր աշխատողին՝
մասնավորապես, շահագրգռում են մարդկանց, մղում նրանց ստեղծագործա-
կան որոնումների: Արտադրամասերում և տեղամասերում մրցություն ծավալ-
վեց հանուն առավել խնայողական աշխատանքի, աշխատանքային և նյու-
թական ծախսումների կրճատման:

Աշխատանքի գիտական կազմակերպման պլաններում սկսեցին զուգակց-
վել տեխնիկական և կազմակերպական միջոցառումները: Արտադրության
կազմակերպման կատարելագործումն, ի տարբերություն տեխնիկականի, որ-
պես կանոն, մեծ կապիտալ ներդրումներ չի պահանջում, բայց զգալի ար-
դյունք է տալիս: Դրա համար էլ գործարանում հատուկ ուշադրություն նվիր-
վեց տնտեսավարման մեթոդների բարելավմանը, ինժեներա-տեխնիկական
անձնակազմի և ծառայողների աշխատանքի ռացիոնալ կազմակերպմանն ու
կատարելագործմանը:

Վերջին տարիներս քաղաքի շատ ձեռնարկություններում զգալի փորձ է
կուտակվել աշխատանքի գիտական կազմակերպման մեթոդների ներդրման
ասպարեզում: Այդ փորձի կենսագործումն օգտավետ է, երբ նպաստում է
կարևորագույն խնդիրների լուծմանը, այսինքն՝ աշխատանքի նպատակահար-
մար բաժանմանն ու համագործակցությանը, աշխատատեղի կազմակերպ-
մանն ու սպասարկման կատարելագործմանը, աշխատանքի ռացիոնալ ձևերի
ու եղանակների տարածմանը՝ հաշվի առնելով հոգեբանության, հիգիենայի և
ֆիզիոլոգիայի պահանջները, բանվորների ու ծառայողների կուլտուր-տեխնի-
կական մակարդակի բարձրացումը:

Աշխատանքի կազմակերպման և արտադրության կառավարման բարելա-
վումը (պլանավորման նոր սիստեմի և տնտեսական խթանման պայմաննե-
րում), տնտեսական մեծ արդյունք ստանալու հիմնական գործոններից մեկն
է: Նոր սիստեմի անցած ձեռնարկությունների արտադրության զարգացման ու
խրախուսման ֆոնդերը ամրապնդում են նյութական բազան և ազդակ հանդի-
սանում ո՛չ միայն ժամանակակից տեխնիկայի, այլև աշխատանքի կազմա-
կերպման ձևերի ու մեթոդների կատարելագործման համար:

Աշխատանքի գիտական կազմակերպման ուղիների որոնումները արգա-
սավոր են, քանի որ վերջին ժամանակներս զգալի չափով բարձրացել է քա-
ղաքի կուսկազմակերպությունների մարտունակությունը, մեծացել նրանց
ղեկավար դերն ու ազդեցությունը արտադրության բոլոր տեղամասերում:
Ամենօրյա մտահոգությունն աշխատանքի գիտական կազմակերպման նկատ-
մամբ կուսկազմակերպություններին հնարավորություն է ընձեռում ձերբա-
զերծվելու մանրուքներից և իրենց ուժերը կենտրոնացնելու հիմնական խըն-
դիրների լուծման վրա:

Այդպես է վարվում Երևանի էլեկտրալամպերի գործարանի կուսակցական



կոմիտեն, որն ԱԳԿ-ի մեջ տեսնում է պլանավորման նոր սիստեմին և տնտե-
սական խթանմանն անցնելու հիմնական գրավականը: Աշխատանքի գիտա-
կան կազմակերպումը, սակայն, դարձել է ձեռնարկության երկրորդ պլանը: Այդ
գործին լուրջ են մոտենում ո՛չ միայն կոմունիստները, այլև ողջ կոլեկտիվը:
Կուսակցական կազմակերպությունը գործարանի բոլոր գործերի ոգին է, բայց
նա չի փոխարինում ադմինիստրացիային: Կուսկոմն իր հիմնական ուշադրու-
թյունը կենտրոնացրել է աշխատանքի գիտական մեթոդների կիրառմանը,
նկատի առնելով, որ աշխատավարձը մարդկանց դաստիարակման կարևորա-
գույն միջոց է: Այս դեպքում շատ բան է կախված աշխատողների նախաձեռ-
նությունից:

Նշված գործարանում ստեղծվեցին ԱԳԿ-ի բրիգադներ, որոնք ընդգըր-
կեցին 160 բանվոր, ինժեներա-տեխնիկական աշխատող ու ծառայող: Կազմը-
վեց մշակված հարցերի ու առաջարկությունների հատուկ թերթիկ, որը բաղ-
մացվեց ու բաժանվեց այն արտադրամասերի և տեղամասերի աշխատողնե-
րին, որոնք արտադրության նեղ տեղերում հանդես էին գալիս որպես ԱԳԿ-ն
մշակման ու կիրառման նախաձեռնողներ: Լրացված հարցաթերթիկները կենտ-
րոնանում էին բրիգադներում և առավել օգտակար առաջարկությունները
ղեկավարության հետ համաձայնեցնելուց հետո մտցվում էին պլանի մեջ,
ներդրվում:

Քանի որ պարուրալարի և ցոկոլի արտադրամասերը խափանում էին կից
արտադրամասերի աշխատանքը և մեծ քանակությամբ խոտան տալիս, կու-
սակցական կոմիտեն ստեղծագործական խմբին հանձնարարեց զբաղվել այդ
արտադրամասերի աշխատանքի գիտական կազմակերպման հարցով: Կուս-
բյուրոն հավաքեց բանվորների առաջարկությունները: Դրանք դարձան ԱԳԿ-ի
պլանների հիմքը: Արվեցին հետևյալ առաջարկությունները՝ փոխել մեքենա-
ների դասավորությունը, կիրառել մասնագիտացում, ներդնել տեխնիկապես
հիմնավորված նորմաներ, փոխել ազդանշանման հարմարանքը, ընդլայնել
սպասարկման ֆրոնտը և այլն: Մեքենաների դասավորության փոփոխման
շնորհիվ մի գծի երկարությունը գրեթե կիսով չափ կրճատվեց: Այժմ պարու-
րալարային մեքենաներին սպասարկող բանվորները կարող են դրանք վարել և
առավել կարճ ժամկետում վերացնել զանազան պատճառներից առաջացած
պարապուրդները: Խոտանի պակասեցման գործում մեծ դեր խաղաց նաև
մասնագիտացումը: Նախկինում պարուրալարերի բազմատեսակության հետե-
վանքով հարկ էր լինում մեծ ջանքեր գործադրել գծերում համապատասխան
լարում ստեղծելու համար: ԱԳԿ-ի մեթոդները կիրառելուց հետո յուրաքան-
չյուր գծի վրա պատրաստվում են մի տեսակ պարուրալարեր. փաթաթողները
սկսեցին միշտ միևնույն գործը կատարել, որի շնորհիվ նրանց աշխատանքը
դարձավ ավելի որակյալ:

Վերը նշված և ԱԳԿ-ի գծով մի շարք այլ միջոցառումների ներդրմամբ
պարուրալարային արտադրամասի փաթեթման տեղամասում 33 տոկոսով
պայմա-բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը, աշխատավարձի պայմա-
նական տնտեսման ֆոնդը կազմեց 35 հազար ռուբլի: Եթե առաջ արտադրա-
մասը թանկարժեք նյութերի գերածախսը միջին հաշվով հասնում էր տարե-
կան 20 հազար ռուբլու, ապա ներկայումս հնարավորություն է ստեղծվել վե-
րանայելու ծախսերի չափերը (նվազեցման իմաստով) և տնտեսելու տարե-
կան 25 հազար ռուբլի: Գործարանի գրեթե բոլոր արտադրամասերում ու տե-
ղամասերում վաղուց լուծվել են ինտերյերների, մեքենաների ներկման, գոր-

ծարանի տերիտորիայի ու շենքի կանաչապատման հարցերը։ Ստեղծվել են լավ կահավորված հանդերձարաններ, լողարաններ, հանգստի և սանիտարական հիգիենայի սենյակներ, կատարելագործվում է աշխատանքի նորմավորումը, աճում տեխնիկապես հիմնավորված արտադրական նորմաների տեսակարար կշիռը։

Վերահսկողություն սահմանելով ԱԳԿ-ի եղանակների իրականացման նկատմամբ, գործարանի կուսակցական կազմակերպությունը մեծ ուշադրություն է նվիրել նաև տնտհաշվարկի ներդրմանը և ձեռնարկության բոլոր օղակների տնտեսական աշխատանքների բարելավմանը։ Այս և այլ միջոցառումների շնորհիվ գործարանը 1967 թվականին, անցյալ տարվա համեմատությամբ, արտադրանքի ծավալը ավելացրեց 20,5 տոկոսով։

Սակայն, հասկանալի է, որ ԱԳԿ-ի մեթոդների մասսայական ներդրումը պահանջում էր տնտեսավարման առավել բարձր մակարդակ, որը որոշ չափով նոր իրողություն էր քաղաքի կուսակցական կազմակերպությունների գործունեության մեջ։ Կուսակցության քաղկոմն ու շրջկոմները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները մեծ ուշադրություն էին նվիրում ԱԳԿ-ի պրոպագանդմանը, նրա մշակման ձևերն ու մեթոդները լայնորեն բացատրվում էին քաղաքական լուսավորության ցանցում, դասախոսություններում, զեկուցումներում, քաղաքային և բազմատիրաժ մամուլում։

Քաղաքային կոմիտեն ուսումնասիրեց աշխատանքի գիտական կազմակերպման գործի վիճակը արդյունաբերական ձեռնարկություններում։ Ուսումնասիրված նյութերը քննարկվեցին ձեռնարկությունների ղեկավարների, կուսակցական, արհմիութենական աշխատողների, տնտեսագետների, արտադրության առաջավորների քաղաքային սեմինարում, որտեղ վերլուծվեց գործարանային լաբորատորիաների և ԱԳԿ-ի բյուրոյի գործունեությունը և նշվեցին նրա հետագա աշխատանքի ակտիվացման ուղիները։ Սեմինարի մասնակիցները եղան Երևանի էլեկտրալամպերի գործարանում, ծանոթացան ԱԳԿ-ի մեթոդների մշակմանը, իսկ սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների սեմինարներն անցկացվեցին հենց գործարանում։

ԱԳԿ-ի հարցերին նվիրված կոնֆերանսը, որը հրավիրել էր քաղկոմը, հանրապետության արհմիության խորհրդի և Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի տնտեսագիտության ինստիտուտի հետ մեկտեղ, մանրազնին ուսումնասիրեց և ընդհանրացրեց քաղաքի առաջավոր ձեռնարկությունների աշխատանքի գիտական կազմակերպման փորձը։ Մտքերի լայն փոխանակության միջոցով վերլուծվեցին աշխատանքի կազմակերպման ստեղծված ձևերն ու նրանց համապատասխանությունն արտադրության տեխնիկական զարգացման մակարդակին, բացահայտվեցին ԱԳԿ-ի պլանների մշակման ու ներդրման գործում եղած թերությունները, ընդհանրացվեց աշխատանքի գիտական կազմակերպման պիոներ-ձեռնարկությունների դրական փորձը։

Ուզում ենք խոսել մի կազմակերպության մասին ևս, որն ԱԳԿ-ի մեթոդները մշակելիս ու կենսագործելիս իր կազմակերպական նախաձեռնությամբ շատ բանով է օգնել գործարանին։ Խոսքը Երևանի փորձնական սարքաշինական գործարանի կուսակցական կազմակերպության մասին է։ Այդ ձեռնարկության կոլեկտիվն այս տարվա սկզբին պլանավորման ու տնտեսական խթանման նոր սիստեմին է անցել լավ նախապատրաստված, տեխնիկատնտեսական բարձր ցուցանիշներով։ Շատերը կարծում էին, որ ամեն ինչ իր հունով կգնա։ Սակայն այդպես չէր. աշխատանքի ընթացքում դժվարություն-



ներ առաջ եկան։ Անհրաժեշտ էր հաղթահարել դրանք։ Ի պատիվ կուսկազմակերպության պետք է ասել, որ նա բռնեց միակ ճիշտ ուղին. հույսը դրեց իր նախաձեռնության, աշխատանքի գիտական կազմակերպման ներդրման վրա։ Կոմունիստները լավ գիտեին, որ միայն աշխատանքի գիտական կազմակերպմամբ է հնարավոր ոտք դնել արդյունաբերության զարգացման հաջորդ աստիճանը, ապահովել արտադրության առավել բարձր արդյունավետությունը։

Ամենից առաջ կուսկազմակերպությունը ձգտում էր հասնել այն բանին, որ ամենքին պարզ լիներ ռեֆորմի էությունը և յուրաքանչյուր բանվորի ու ծառայողի անելիքը՝ նրա իրագործման ոլորտում։ Գործարանում ստեղծվեց ԱԳԿ-ի գիտատեխնիկական խորհուրդ, իսկ արտադրամասերում և բաժիններում՝ ստեղծագործական բրիգադաներ։ Այդտեղ ընդգրկվեցին տեխնոլոգներ ու վարպետներ, տեղամասերի պետեր ու նորմավորողներ, տնտեսագետներ ու առաջավոր բանվորներ։ Ստեղծագործական բրիգադաների գործունեությունը ղեկավարում, նրանց պլանների կազմմամբ սովորաբար զբաղվում է արտադրամասի պետի տեղակալը։ Գործարանում մասնագիտացվեցին արտադրամասերն ու տեղամասերը, ստեղծվեցին ճշգրիտ մեքենայացված գծեր։ Մրցությունը ծավալվեց հանուն արտադրության բարձր կուլտուրայի։

Կուսակցական կազմակերպությունը միաժամանակ ձգտում էր արտադրության տեխնիկական կատարելագործման, նորագույն տեխնոլոգիական սարքավորումների յուրացման, արտադրական էսթետիկայի արմատավորման, աշխատավորների աշխատանքային ու կենցաղային պայմանների բարելավման։ Մրցությունը գործարանի կոլեկտիվին հնարավորություն ընձեռեց կարգ ու կանոն մտցնելու արտադրամասերում, բարձրացնելու կարգապահությունը, կահավորելու բաղնիքները, հանդերձարանները, բուֆետները, բժշկական կետերը։ Եվ պատահական չէ, որ նման ձեռնարկությունում զգալի չափով կրճատվեց կադրերի հոսունությունը, բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը։

Իհարկե, այդ մեծ գործում թերություններ էլ կան։ Չի կարելի չնկատել, որ որոշ ձեռնարկություններում մշակված պլանները չեն ընդգրկում գործարանի առաջ ծառացած էական հարցերը։ Մի մասն արդյունավետ է, մյուսները՝ էական օգուտ չեն տալիս։ Դեռևս շատ ձեռնարկություններում ԱԳԿ-ի գործի մակարդակը չի համապատասխանում ժամանակակից պահանջներին, ետ է մնում արտադրության զարգացման տեխնիկական մակարդակից։ Այդ հետևանք է այն բանի, որ կուսակցական կազմակերպությունները ամենուր չեն հետևում, որպեսզի պլանները կազմելիս խորապես ուսումնասիրվեն արտադրության պայմանները, նկատի առնելով գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները։

Հարկ է, որ կուսակցական կազմակերպությունները և տնտեսական ղեկավարները խիստ ուշադրություն նվիրեն աշխատանքային ռեսուրսների առավել ռացիոնալ օգտագործման հարցերին։ Դեռևս զգալի են բանվորական ժամանակի կորուստները՝ գործալքումների, պարապուրդների և ադմինիստրացիայի թույլտվությամբ աշխատանքի չներկայանալու պատճառով։ Քիչ ժամանակ չի վատնվում նաև ներքին հերթափոխությունների պարապուրդների հետևանքով, որոնք կազմակերպական բնույթի զանազան թերությունների, նյութերի անկանոն ստացման, անհրաժեշտ գործիքների բացակայության, սարքավորումները ժամանակին չվերանորոգելու հետևանք են։

Արտադրության մեջ ԱԳԿ-ն լայնորեն կիրառելու մասին ՍՄԿԿ XXIII հա-

մագումարի դիրեկտիվների կատարումը մեծ մասամբ կախված է նրանից, թե կադրերը որքան են զինված տնտեսագիտական հիմունքներով, աշխատանքի գիտական կազմակերպման և արտադրության կառավարման ունակություններով։ Կուսակցության քաղաքային կոմիտեն միջոցառումներ է մշակում ԱԳԿ-ի ասպարեզում ղեկավար կադրերի և ինժեներա-տեխնիկական անձնակազմի որակավորումը բարձրացնելու, աշխատանքի գիտական կազմակերպման ոլորտում լավագույն ձեռնարկությունների առաջավոր փորձը տարածելու նպատակով։ Սակայն, դեռևս ԱԳԿ-ի վերաբերյալ համապատասխան գրականության, լավ մեթոդական ձեռնարկների սուր պակաս է զգացվում։ Անհրաժեշտ է կարգավորել գրականության սիստեմատիկ լույս ընծայումը, գիտապոպուլյար և ուսուցողական ֆիլմերի թողարկումը, մասնագիտական ամսագրերում ԱԳԿ-ի հարցերի պարբերաբար լուսաբանումը։

Մինչև վերջերս բուհերն ու տեխնիկումները, չնայած բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մեծ թափին, աշխատանքի գիտական կազմակերպման գծով մասնագետներ չեն տվել։ Այդ ասպարեզում անհրաժեշտ գիտելիքներ չեն ստացել ինժեներները, տնտեսագետներն ու տեխնիկները, ինչպես նաև պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների սովորողները։ Միաժամանակ, անհրաժեշտ է ծավալել ԱԳԿ-ի սկզբունքների և այդ բնագավառում ձեռք բերված նվաճումների ուսումնասիրությունը՝ համապատասխան մինիստրություններին և գերատեսչություններին կից որակավորման բարձրացման կուրսերում։

Աշխատանքի գիտական կազմակերպումը պետք է ընդգրկի արտադրության կառավարման բոլոր տեղամասերը։ Անհրաժեշտ է, որ կուսակցական կազմակերպությունները հմտորեն ղեկավարեն աշխատանքի գիտական կազմակերպմամբ զբաղվող արտադրական կոլեկտիվների գործունեությունը։ Ձեռնարկության որոշ ղեկավարներ փորձում են այդ գործը բարդել ստեղծագործական բրիգադների վրա, որոնք, անշուշտ, մշակելով ԱԳԿ-ի մեթոդները, մեծ ու օգտակար գործ են կատարում։ Կուսկազմակերպությունները պետք է ձգտեն աշխատանքի գիտական կազմակերպումը դարձնել կառավարման պարտադիր ֆունկցիա, ինչպես, ասենք, կոնստրուկտորական և տեխնոլոգիական ֆունկցիաները։

Փորձը ցույց է տալիս, որ միայն հասարակայնության և ձեռնարկությունների համապատասխան ծառայությունների բանիմաց համագործակցությամբ այդ ասպարեզում կարելի է հաջողությունների հասնել։

Լ. ՍԱՀԱԿՅԱՆ
ՀԿԿ Երևանի քաղկոմի արդյունաբերության
և տրանսպորտի բաժնի վարիչ

## ԿՈՄԲԻՆԱՏՆ ԱՇԽԱՏՈՒՄ Է ՆՈՐ ՍԻՍՏԵՄՈՎ

*Տնտեսական ռեֆորմին նախապատրաստվելու ու այն հաջող անցկացնելու բնագավառում Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի կուսակցական կազմակերպությունը զգալի աշխատանք է կատարել։ Նա ժամանակին բոլոր կոմունիստների ուշադրությունն ուղղել է ռեֆորմի քաղաքական նշանակության, նրա տնտեսական առավելությունների*



պարզաբանման հարցերի վրա, կուսկոմիտեի նիստերում քննության են առել «Նոր տեխնիկայի ներդրման և արմատավորման վիճակը», «Մանվածքային ֆաբրիկայի կուսակցական կազմակերպության և տնտեսական ղեկավարության աշխատանքը՝ ֆաբրիկան շահութաբեր դարձնելու գործում», «Արտադրության հիմնական ֆոնդերի օգտագործումը կոմբինատում», «Ժողովրդական տնտեսության մեջ տնտեսավարման և խնայողության համակոմբինատային ստուգատես անցկացնելու խնդիրը», «Արտադրության ռեզերվների հայտնաբերումն ու օգտագործումը» և այլ հարցեր՝ կապված պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին անցնելու հետ։ Այդ նպատակին են ծառայել նաև մշտական գործող արտադրական խորհրդակցությունները, տնտեսական անալիզի, աշխատանքի կազմակերպման և տեխնիկական նորմավորման բյուրոները, ժողովրդական վերահսկողության և «Կոմերիտական լուսարձակ»-ի պոստերը։

Կուսակցական կոմիտեն անհրաժեշտ համարեց ուսումնասիրել նաև Միության այն ձեռնարկությունների փորձը, որոնք 1966 թվականից աշխատում են նոր սիստեմով։ Դրա համար տնտեսական և կուսակցական աշխատողների մի խումբ գործուղվեց Օրեխովո-Զուևոյի բամբակագործական կոմբինատը։ Ուսումնասիրության արդյունքները քննարկվեցին սկզբնական կուսակցական կազմակերպությունների ժողովներում, տնտեսական վերլուծության բյուրոյի ընդլայնված նիստերում, որտեղ ընդունվեցին պրակտիկ միջոցառումներ։

Ռեֆորմի կարևոր խնդիրներից մեկը ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնության և նախաձեռնության ընդլայնումն է։ Ելնելով դրանից, կոմբինատի կուսկոմիտեն և արտադրամասային կուսկազմակերպություններն ամեն կերպ ձգտում են տնտեսական կադրերին դաստիարակել ինքնուրույն և համարձակ գործելու ոգով։ Փորձը ցույց է տալիս, որ տնտեսության կուսակցական ղեկավարման ասպարեզում կադրերի մանր խնամակալությունը կաշկանդում է աշխատողներին, արգելակում սեփական նախաձեռնության զարգացմանը, պարարտ հող ստեղծում անպատասխանատվության և ինքնապահովագրման համար և, վերջապես, թույլ չի տալիս նկատելու լավ աշխատողներին, քողարկում է ապաշնորհներին։

Ահա թե ինչու նման թերությունները չկրկնելու համար կոմբինատի կուսկոմիտեն լուրջ զբաղվեց կադրերի տնտեսագիտական ուսուցման կազմակերպման, նրանց տեղաբաշխման ու դաստիարակման հարցերով։ Կոմբինատում ստեղծվեց տնտեսագիտական դպրոց, տարբեր մասնագիտությունների գծով 17 խմբակ, որոնցում ընդգրկվեցին 425 հոգի։ Տնտեսագիտական դպրոցում և խմբակներում պարապմունքներն անցկացվում էին օրինակելի, տեսական հարցերը սերտորեն կապում կոմբինատի ու նրա արտադրամասերի ամենօրյա գործնական խնդիրների լուծման հետ։

Կուսկոմիտեի ուշադրության կենտրոնում են նաև արտադրամասային կուսկազմակերպությունների, կուսակցական խմբերի դերի բարձրացման, նրանց գործունեության բարելավման խնդիրները։ Կուսկոմը և արտադրամասային կուսկազմակերպություններն ամեն ամիս համատեղ անց են կացնում կուսակցական խմբերի կազմակերպիչների սեմինարներ՝ նվիրված ներկուսակցական և քաղաքական-մասսայական աշխատանքի նոր ձևերի ու մեթոդների ուսումնասիրմանը։ Այդ սեմինարներում կատարվում է լավագույն կուսկազմակերպիչների աշխատանքի փորձի փոխանակում։ Բացի այդ,

Երեք ամիսը մեկ անց են կացվում կուսկազմակերպիչների հրահանգչական խորհրդակցություններ, ուր քաղաքական կարևոր հարցերի շուրջ կազմակերպվում են տեսական զեկուցումներ, դասախոսություններ։ Կուսակցական խմբերը վճռական դեր են խաղում արտադրական պլանների կատարման, կուսակցական և աշխատանքային կարգապահության ամրապնդման գործում։

Պետական առաջադրանքների կատարման ու տնտեսական նոր սիստեմով հաջող աշխատելու երաշխիքներից մեկը բանվորների համար աշխատանքային և կենցաղային նորմալ պայմանների ստեղծումն է, որը չէր կարող չարժանանալ կուսակցական կազմակերպության ամենօրյա լուրջ ուշադրությանը։ Այսպես, երբ արտադրամասերում օդի ջերմաստիճանը հասնում է 26—28-ի, բանվորի աշխատունակությունն իջնում է 5 տոկոսով, իսկ երբ այն 30°-ից էլ է անցնում, ապա յուրաքանչյուր աստիճանի բարձրացման հետևանքով աշխատունակությունն իջնում է մոտ 15 տոկոսով։ Ուստի, որոշվեց վերակառուցել օդափոխության սիստեմները, արտադրական շենքերն ապահովել մաքուր օդով։

Տեքստիլ արդյունաբերության ձեռնարկություններում պակաս կարևոր չէ աշխատանքային տեղերի նորմալ լուսավորումը։ Մինչդեռ, մանվածքային և գործվածքային ֆաբրիկաների արտադրամասերում աշխատանքային տեղերի լուսավորությունը 200 լյուքսից չէր անցնում, իսկ առանձին տեղամասերում՝ հազիվ 100 էր։ Որոշվեց արտադրամասերում անցկացնել լյումինեսցենցիային լուսավորություն, որի շնորհիվ մեկ քառակուսի մետրի լուսավորությունը հասցվեց 500 լյուքսի։ Հաշվումները ցույց են տալիս, որ միայն աշխատատեղերի ցերեկային լույսի ապահովմամբ հնարավորություն կստեղծվի աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 8— 10, սարքավորումներինը՝ 6—8 տոկոսով։ Իսկ եթե հաշվի առնենք նաև օդի ջերմաստիճանի նորմալացումն ու օդափոխության բարելավումը, ապա աշխատանքի և սարքավորումների արտադրողականությունը կբարձրանա 12—15 տոկոսով։

Մեծ գործ է արվել աշխատանքի պաշտպանության և անվտանգության տեխնիկայի կանոնների պահպանման ասպարեզում. բարելավվել են սանիտարական-կենցաղային պայմանները, ֆաբրիկաներում և բաժիններում վերակառուցվել են ճաշարանները, հանրակացարաններում կառուցվել կինոդահլիճներ, հանգստի սենյակներ ու խաղասենյակներ։ Այս տարի շահագործման հանձնվեց 50 տեղանոց պրոֆիլակտորիան։ Կոմբինատը 3000 քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ 3 ջերմոց ունի. դրա շնորհիվ աշխատողներն ու մանկական հիմնարկները ձմռանը ապահովվում են բանջարեղենով։

Կոմբինատի կուսակցական կոմիտեն սիստեմատիկաբար զբաղվում է արտադրության բոլոր ճյուղերում տեխնիկական առաջադիմությունը արմատավորելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու հարցերով։ Բարելավվել է մեքենասարքավորումների տեխնիկական վիճակը։ Միայն 1966 թվականին տեխնիկայի ներդրման գծով իրացվել է շուրջ 650 միջոցառում։

Վերջին տարիներին զգալիորեն աճել են կոմբինատի հիմնական ֆոնդերն ու նրանց փոխհատուցումը։ Այսպես, եթե 1966 թվականին մեկ ռուբլու հիմնական ֆոնդի դիմաց թողարկվել է 2, 28 ռուբլու արտադրանք, ապա 1967 թվականին (տնտեսական նոր սիստեմին անցնելուց հետո) այդ ցուցանիշը կազմեց 3, 85 ռուբլի կամ ֆոնդահատույցն աճեց 12 տոկոսով։

Չնայած ամբողջությամբ վերցրած ֆոնդահատույցն ավելացել է, հիմնա-



կան արտադրական ֆոնդերը և, հատկապես, դրանց ակտիվ մասը դեռևս բա-
վարար չեն օգտագործվում։ Անհրաժեշտ է արմատապես բարելավել արտա-
դրական հիմնական ֆոնդերի օգտագործումն ու առավել չափով բարձրացնել
ֆոնդահատույցը։ Դրանք հիմնականում արվում են նոր սարքավորումների
մոնտաժման ու գործարկման, գործող սարքավորումների մոդեռնացման, ար-
տադրության տեխնոլոգիայի բարելավման, աշխատանքի գիտական կազ-
մակերպման ու արտադրողականության բարձրացման միջոցով։

Դժվար է գերագնահատել շահույթներից ձեռնարկության աշխատողների
նյութական խրախուսման ֆոնդ ստեղծելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի և կառա-
վարության որոշման կարևորությունը։ Կոմբինատի ֆաբրիկաները ջանք չեն
խնայում միջոցների տնտեսման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման և ար-
տադրության շահութաբերության բարձրացման համար։ Մանածագործները
պարտավորվել են հետադարձ մնացուկների կրճատման և խառնուրդից ման-
վածքի ելուստը 1,5—2 տոկոսով ավելացնելու միջոցով տարեկան տնտեսել
38 հազար, սարքավորումների արտադրողականությունը բարձրացնելու հաշ-
վին՝ 36 հազար, օժանդակ նյութերի ծախսումները 5 տոկոսով կրճատելու մի-
ջոցով՝ 18 հազար ռուբլի։ Բացի այդ, գերպլանային պարապուրդների վերաց-
մամբ արտադրանքի ինքնարժեքը կիջնի 23 հազար ռուբլով։

Հաշվարկները ցույց են տալիս, որ արտադրանքի ինքնարժեքի իջեցման
ուղղությամբ ձեռնարկվող միջոցառումների իրականացումը հնարավորու-
թյուն կընձեռի մանվածքային ֆաբրիկայում տնտեսել 128 հազար ռուբլի,
իսկ գործվածքայինում՝ 150 հազար։ Բոլոր կոմպլեքս միջոցառումների իրակա-
նացումից տնտեսվող գումարը կկազմի 320 հազար ռուբլի։

Այս տարվա տասն ամսվա արդյունքները ցույց տվեցին, որ մեր հաշ-
վարկները ռեալ են։ Անցած 3 եռամսյակում ֆաբրիկան աշխատեց շահույթով,
1 ռուբլու ապրանքային արտադրանքի թողարկման վրա պլանով նախատես-
ված 95,90 կոպեկի դիմաց ծախսվեց 95,43 կոպեկ, որի շնորհիվ տնտեսվեց
333 հազար ռուբլի։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման նպատակով կազմ-
ված կոմպլեքսային պլանի հաջող կատարումը պահանջում է արտադրու-
թյան բոլոր տեղամասերում գործը լավ կազմակերպել։ Հասկանալի է, որ եթե
վարպետները, արտադրամասերի պետերը, արտադրության ղեկավարներն
անհրաժեշտ տնտեսական գիտելիքներ չունենան, չտիրապետեն արտադրու-
թյան կազմակերպման արվեստին, ապա չեն կարող հասնել ցանկալի ար-
դյունքների. ուստի, կոմպլեքսային պլանում, տեխնիկական կրթության հետ
մեկտեղ, շատ կարևոր տեղ է տրված ինժեներա-տեխնիկական աշխատողների
և առաջավոր բանվորների տնտեսական գիտելիքների մակարդակի բարձրաց-
մանը։ Այդ նպատակով կոմբինատում ստեղծվել են վարպետների, նրանց
օգնականների, ղեկավար և ինժեներա-տեխնիկական անձնակազմի տնտեսա-
գիտական գիտելիքների բարձրացման դիֆերենցված խմբակներ։ Ավելորդ չենք
համարում նշել, որ կոմբինատում ամեն շաբաթ վերլուծվում են արտադրա-
կան տեղամասերի աշխատանքները, իսկ ամսի վերջին դրանց պետերը հաշիվ
են տալիս կոմբինատի ղեկավարությանը։ Ընդ որում, նրանցից պահանջվում
է վերլուծել կատարված աշխատանքը և առաջարկություններ մտցնել արտա-
դրության արդյունավետությունը բարձրացնելու համար։ Մեր ձեռնարկու-
թյուններում ղեկավար աշխատողները սովորել են քննարկել հաշվեկշիռները,

հաշվել արտադրանքի ինքնարժեքը և խորամուխ լինել ֆինանսական-տնտեսական մյուս ցուցանիշների մեջ։

Բարձրացել է կոմունիստների դերն արտադրության մեջ։ Նրանցից շատերը զգալի հաջողություններ են ձեռք բերել արտադրության գիտական կազմակերպման, բանվոր-բանվորուհիների նախաձեռնությունների խրախուսման և տարածման, աշխատանքի արտադրողականության և արտադրության շահութաբերության բարձրացման ասպարեզում։

Կուսակցական կազմակերպության ուշադրության կենտրոնում է կոմբինատի աշխատողների քաղաքական դաստիարակությունը։ Գործամասերում մշտապես կարդացվում են դասախոսություններ, զեկուցումներ, անց են կացվում զրույցներ՝ երկրի ներքին ու արտաքին քաղաքականության, միջազգային դրության կարևորագույն հարցերի շուրջ։ Ավելի քան 700 երիտասարդ սովորում են բաներիտ դպրոցներում, տեխնիկումներում և բարձրագույն ուսումնական հաստատություններում։ Կուլտուրայի պալատում գործում են լեկտորիում, աշխատանքի առաջավոր մեթոդների ու տեխնիկական առաջընթացի համալսարան, կազմակերպվում են թեմատիկ երեկոներ, հանդիպումներ։

Այս ամենի շնորհիվ պլանավորման նոր սիստեմին անցած մեր կոմբինատը տասն ամսվա պլանը կատարեց 12 օր շուտ, տվեց 2 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։ Արտադրանքի ծավալը աճեց 3,1 տոկոսով։ Միաժամանակ, 1967 թվականի 10 ամսում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, պատրաստի արտադրանքի թողարկումը ավելացավ 3 միլիոն 700 հազար մետրով, մանվածքինը՝ 220 տոննայով։ Տնտհաշվարկային սկզբունքի իրականացման շնորհիվ վերացվեցին շրջանառու միջոցների արտապլանային մնացորդները, ուշադրությունը կենտրոնացվեց եկամտաբերության ավելացմանը։ Մանվածքային արտադրության հետադարձ մնացուկների կրճատումը, գործող հաստոցների կարգավորումը, վերջնամշակման պրոցեսում ներկման տեխնոլոգիայի անթերի կենսագործումը հնարավորություն ընձեռեցին օգուտների ֆոնդը ավելացնել 138 հազար ռուբլով։ Բացի այդ, արտադրանքի իրացման պլանը գերակատարվեց 102,7 տոկոսով, որից ստացվեց 47 հազար ռուբլու արտապլանային կուտակում։

Նշանակալի հաջողություններ են ձեռք բերվել թողարկվող արտադրանքի որակի բարելավման, հումքի և օժանդակ նյութերի տնտեսման բնագավառում։ Խնայողության շնորհիվ տնտեսվել է 11 տոննա բամբակ, 123 տոննա թել, 26 հազար կվտ-ժամ էլեկտրաէներգիա։ Նկատելիորեն բարելավվել է սոցիալիստական մրցությունը և կոմունիստական աշխատանքի շարժման կազմակերպումը։ Գործարքով աշխատող բոլոր կոմունիստներն ու կոմերիտականները արտադրության առաջավորներ են։

Կոմբինատի կոլեկտիվը ձեռք բերած այս հաջողությունների համար 1967 թվականի առաջին և երկրորդ եռամսյակներում արժանացավ առաջին կարգի մրցանակի՝ շահեց ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի փոխանցիկ դրոշը, նրան շնորհվեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության, ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի հուշադրոշը։

Մ. ԹԵՎԱՆՅԱՆ
Լենինականի Մայիսյան ապստամբության
անվան տեքստիլ կոմբինատի կուսակցական
կոմիտեի քարտուղար

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՀՆԳՕՐՅԱ ՇԱԲԱԹԻ ՀՈԳՍԵՐԸ

Հնգօրյա աշխատանքային շաբաթին անցնելը սոցիալական մեծ նշանակություն կունենա մեր հասարակության համար, ասաց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIII համագումարին տված իր զեկուցման մեջ, քանի որ դա լրացուցիչ հնարավորություններ կստեղծի աշխատանքի պայմանները բարելավելու և բանվորների ու ծառայողների կողմից իրենց ազատ ժամանակը ռացիոնալ օգտագործելու համար։ Կստեղծվեն հանգստի, երեխաների դաստիարակության, արտադրությունից չկտըրված սովորելու, աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման ավելի լայն հնարավորություններ։ Մինչև այս տարվա սեպտեմբեր ամիսը երկրի արդյունաբերության տարբեր ճյուղերի ավելի քան 800 ձեռնարկությունների մոտ երկու մլն բանվոր-ծառայողներ աշխատում էին նոր սիստեմով։ Սեպտեմբերից այն մասսայական բնույթ ստացավ։

Աշխատաշաբաթի նոր սիստեմով աշխատող արդյունաբերական ձեռնարկությունների փորձը ցույց է տալիս, որ այն նախկինի համեմատությամբ ունի որոշ առավելություններ։ Նոր աշխատաշաբաթը տնտեսական մեծ արդյունք է տալիս. այն հնարավորություն է ընձեռում արագացնելու աշխատանքի արտադրողականության և հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման տեմպերը։ Այսպես. Պերմի արդյունաբերական ձեռնարկությունները նոր աշխատաշաբաթին անցնելու շնորհիվ արտադրանքի բացթողման 1966 թվականի պլանները կատարեցին 102, իսկ աշխատանքի արտադրողականության բարձրացմանը՝ 103,3 տոկոսով։ 1965 թվականի համեմատությամբ այստեղ արտադրանքի բացթողումն աճեց 12,2, իսկ աշխատանքի արտադրողականությունը՝ 9,1 տոկոսով։

Աշխատաշաբաթի նոր պայմաններում զգալիորեն կրճատվում են հերթափոխությունների նախապատրաստման և ավարտման աշխատանքային ծախսումները, սարքավորումների պարապուրդները, աշխատաժամանակի ներհերթափոխային կորուստները և այլն։ Նոր սիստեմը հնարավորություն է ընձեռում ոչ միայն կրճատել աշխատանքի անարտադրողական ծախսերը, այլև ավելի խնայողաբար օգտագործել վառելիքն ու էլեկտրաէներգիան։ Դա առաջանում է հերթափոխությունների կրճատման, հաստոցների, մեքենաների, ջեռուցման սիստեմների, տրանս-

պորտի, բեռնման-բեռնաթափման միջոցների գործի դրման անհրաժեշտ ժամանակի կրճատման շնորհիվ։ Այդ կարևոր միջոցառումը նպաստում է արտադրության կազմակերպման բարելավմանը, թեթևացնում բանվորների և ծառայողների աշխատանքային պայմանները, բարձրացնում նրանց որակավորումն ու կուլտուր-տեխնիկական մակարդակը, լայն հնարավորություններ է ընձեռում առանց փոփոխելու աշխատաժամերը, զգալիորեն բարելավել աշխատաժամանակի և ազատ ժամանակի միջև եղած հարաբերակցությունը։ Չէ՛ որ հնգօրյա աշխատաշաբաթը իրագործվում է մինչև այժմ գոյություն ունեցող 41 ժամվա տևողության պայմաններում։ Իսկ սա նշանակում է, որ արտաաշխատանքային ժամանակի շաբաթական ֆոնդի նոմինալ ընդհանուր մեծությունը, նույնպես մնում է նույնը, այսինքն՝ 127 ժամ (168—41 ժ.)։ Սակայն, արտաաշխատաժամանակի ներքին կազմությունը նոր պայմաններում խիստ փոփոխվում է։ Մեր հանրապետության աշխատավորների աշխատաժամանակի կազմությունը (մինչև աշխատաշաբաթի նոր սիստեմին անցնելը) կարելի է պատկերացնել ստորև բերված տվյալներից (տվյալները ստացված են Երևանի 4 խոշոր արդյունաբերական ձեռնարկություններում մեր կողմից 1963 թվականի ամռանը անցկացրած 10,1 հազար բանվոր ծառայողների արտաաշխատաժամանակի հետազոտություններից)։

| | Ժամ րոպե | Տեսակարար կշիռը տոկոսներով |
|---|---|---|
| 1. Արտադրության մեջ աշխատանքի հետ կապված ժամանակը (աշխատավայրի գնալ-գալը, հերթափոխության ընդունում-հանձնումը և այլն) . . . | 1—24 | 8,1 |
| 2. Տնային աշխատանքներ և ինքնասպասարկում . | 3—49 | 22,3 |
| 3. Քնել և սնվել . . . . . . . . . | 8—05 | 48,2 |
| 4. Ազատ ժամանակ . . . . . . . | 3—12 | 19,4 |
| 5. Ժամանակի այլ ծախսումներ . . . . . | 0—22 | 2,0 |
| Ընդամենը . . . . . . . . | 16—52 | 100 |

Աղյուսակը ցույց է տալիս, որ 1963 թվականին արտաաշխատաժամանակի ստրուկտուրայում տնային աշխատանքները կազմում էին ընդհանուր ֆոնդի 22,3 տոկոսը, մինչդեռ ազատ ժամանակը միայն 19,4 տոկոսը։ Արտադրության մեջ աշխատանքի հետ կապված ժամանակը կազմում էր 8,1 տոկոս։ Այժմ տեսնենք, թե ինչ փոփոխություններ են կատարվում արտաաշխատաժամանակի տվյալ կազմությունում 5-օրյա աշխատանքային շաբաթի անցնելուց հետո։

Նախ, երկու հանգստի օրվա շնորհիվ զգալի չափով աճում է ազատ ժամանակը (տարվա ընթացքում 52 հանգստի օրվա փոխարեն այժմ այն հասնում է 104-ի)։ Ազատ ժամանակի մեծությունն աճում է նաև արտադրության մեջ աշխատանքի հետ կապված ժամանակի և տնային աշխատանքներին հատկացվող ժամանակի էական կրճատման շնորհիվ։ Այսպես, եթե մեր հանրապետության բանվոր-ծառայողներն, ըստ վերը բերած տվյալների, աշխատավայրը գնալ-գալու և հերթափոխությունները հանձնել-ընդունելու համար օրական ծախսում էին մոտ 1,5 ժամ, ապա նոր պայմաններում անարտադրողական վատնումները յուրաքանչյուր աշխատավորի համար պակասում են տարեկան 70—80 ժամով, այսինքն՝ նրանք տնտեսում են 11—12 օր։ Առանձնապես շահում են աշխատող կանայք։ Նրանց հանգստի օրը անցնում էր տնային գործերի մեջ և փաստորեն կանայք հանգստի օր չունեին։ Այժմ այդպես չէ։ Նրանք կուլտուրական հանգստի համար շատ ժամանակ են ունենում։ Մյուս կողմից՝ զգալիորեն կրճատվում է տնային աշխատանքներին հատկացվող բուն ժամանակի մեծությունը։ Երբ աշխատավորները ունեին մեկ հանգստի օր, ապա տնային աշխատանքները կատարելու համար կիրառում էին դրան համապատասխան ռեժիմ և հերթականություն, իսկ այժմ հիմնովին փոխվել է այդ աշխատանքները կատարելու և՛ ռեժիմը, և՛ հաջորդականությունը, և այդ պատճառով էլ տվյալ նպատակների համար հատկացվող ժամանակի կրճատման լայն հնարավորություններ է ստեղծվում։

Նոր աշխատաշաբաթին անցնելը բարերար ազդեցություն է ունենում բանվոր-ծառայողների առողջության, նրանց հանգստի կազմակերպման վրա։ Փորձը ցույց է տալիս, որ այն քաղաքներում և ձեռնարկություններում, ուր անցել են աշխատաշաբաթի նոր սիստեմի, զգալիորեն կրճատվել են հիվանդության պատճառով աշխատանքի չներկայանալու, արտադրական տրավմատիզմի դեպքերը, ավելացել առանց արտադրությունից կտրվելու սովորողների թիվը, գրադարանների, կինոթատրոնների, ակումբների, սպորտսրահների հաճախումները և այլն։ Այսպես, Դնեպրոպետրովսկի հաստոցաշինական, Զապորոժիեի «Զապորոժստալ» գործարաններում, Դնեպրոձերժինսկի քիմիական կոմբինատում առանց արտադրությունից կտրվելու տեխնիկումներում և բուհերում սովորողների թիվը նախկինի համեմատությամբ աճել է 13—20 տոկոս («Экономическая газета», № 11, 1967 стр. 16), «Զապորոժստալում» արտադրական տրավմատիզմի դեպքերը կրճատվել են 22 տոկոսով (նույն թերթը, № 18, 1967, стр. 20)։ Այսպիսով, աշխատանքային շաբաթվա նոր սիստեմը հասարակությանը և նրա անդամներին մեծ օգուտ է տալիս։

Սակայն աշխատաշաբաթի նոր սիստեմի վերոհիշյալ առավելությունները կարող են ի սպառ դրվել հասարակության միայն այն դեպքում, եթե ճիշտ նախատեսվի հերթափոխությունների նոր գրաֆիկների ներդրումը գործարաններում, կարգավորվի հերթափոխության և աշխատանքային օրվա համար նախատեսված առաջադրանքների



կատարումը, օժանդակ և աջակցող ծառայությունների ու արտադրամասերի աշխատանքների կոորդինացումը, բարելավվեն աշխատանքի պայմաններն ու կազմակերպումը, սարքավորումների վերանորոգման դրվածքը։ Լենինգրադի արդյունաբերական ձեռնարկությունները նոր աշխատաշաբաթին անցնելուց հետո 1-ին և 2-րդ հերթափոխությունների տևողությունը դարձրել են 8 ժամ, ընդմիջումը՝ 30 րոպե, իսկ գիշերային հերթափոխությունը՝ 7 ժամ։ Գործարանների դիրեկցիաները, կոնստրուկտորական բյուրոները և լաբորատորիաներն աշխատանքը սկսում են 1 ժամ ուշ։ Տրանսպորտային և բեռնման-բեռնաթափման ծառայությունները շաբաթվա բոլոր 7 օրերն էլ աշխատում են և դա ապահովում է տրանսպորտի ժամանակին բեռնումն ու բեռնաթափումը։ Շաբաթվա 5 օրերի աշխատաժամանակի տևողությունն այս օբյեկտներում 8 ժամ է, իսկ պակասող մեկ ժամը լրացվում է ամսվա վերջին շաբաթ օրերի 8 ժամյա աշխատաժամանակով։ («Экономическая газета»), № 13, 1967, стр. 4)։

Լուրջ ուշադրություն պետք է նվիրել աշխատաշաբաթի նոր սիստեմին անցած բոլոր օբյեկտների ռիթմիկ և համաձայնեցված աշխատանքի ապահովմանը, որովհետև արտադրանքի անհամաչափ թողարկումը այս կամ այն օբյեկտում, արտաժամյա աշխատանքի պահանջ է հարուցում։ 5-օրյակը չպետք է խախտի արդյունաբերական ձեռնարկությունների, ինչպես նաև մատակարարող կազմակերպությունների միջև գոյություն ունեցող կապերը։ Արտադրական գրաֆիկները պետք է լիովին կոորդինացվեն և տրանսպորտային փոխադրումների գրաֆիկների հետ։ Նոր սիստեմի կիրառման փորձն ապացուցել է, որ հերթափոխությունների թիվը հնարավոր է ավելացնել միայն ժողովրդական լայն սպառման առարկաների և դեֆիցիտային ապրանք արտադրող ձեռնարկություններում։ Բացի այդ, մեծ ուշադրություն պետք է նվիրել աշխատավորների ողջ աշխատանքային ժամանակի և, հատկապես, ազատ ժամանակի աճող ֆոնդի ավելի արդյունավետ օգտագործմանը։

Անշուշտ, մեր հանրապետությունում ձեռք են բերվել զգալի նվաճումներ աշխատավորների արտաաշխատանքային և ազատ ժամանակի ռացիոնալ օգտագործման ասպարեզում։ Օրինակ, մեր հանրապետության աշխատավորներին ցույց տրվող կենցաղային սպասարկման ծավալը 1960 թվականի 4322 հազար ռուբլուց 1965-ին հասավ 9912 հազարի։ Նույն թվականներին գազիֆիկացված բնակարանների թիվը 10194-ից հասավ 146537-ի, կենտրոնական ջեռուցում ունեցող բնակարանների տեսակարար կշիռը բնակարանային ֆոնդի ընդհանուր ծավալի մեջ 48 տոկոսից՝ 79-ի, բնակչությանը տարեկան բաց թողնված խմելու ջուրը 35608 խմ-ից՝ 70756 խմ-ի, լվացքը՝ 11 տոննա սպիտակեղենից 31-ի, տրամվայով-տրոլեյբուսով կատարած ուղևորների փոխադրումները՝ 62 մլն հոգուց՝ 102 մլն հոգու, բուհերում և տեխնիկումներում սովորողների թիվը՝ 34973 հոգուց՝ 70310-ի, կինո-թատրոնների թիվը՝ 404-ից 617-ի, համերգներինը՝ 1230-ից 1719-ի։

Հասարակական սննդի շրջանառության ծավալը 1958 թվականի 34 մլն ռուբլուց, 1965-ին հասավ 67 միլիոնի։ Նախադպրոցական հիմնարկներում ընդգրկված երեխաների թիվը 19,2 հազարից՝ 62 հազարի, մեկ հոգուն ընկնող ապրանքաշրջանառության ծավալը 252 ռուբլուց՝ 351-ի, յուրաքանչյուր 10 հազար բնակչին ընկնող հիվանդանոցային մահճակալների թիվը 65,7-ից՝ 81-ի։

Չնայած այս նվաճումներին, հանրապետությունում բանվոր-ծառայողների համար դեռևս չեն ստեղծված արտաաշխատանքային և ազատ ժամանակի ռացիոնալ օգտագործման բոլոր անհրաժեշտ պայմանները, իսկ եղած հնարավորություններն էլ անբավարար են ի սպաս դրվում այդ նպատակին։ Դրա հետևանքով էլ, ինչպես վկայում են Երևանի 4 խոշոր գործարաններում 1963 թվականին մեր կողմից անցկացված հետազոտության տվյալները, աշխատավորները դեռևս անարդյունավետ են օգտագործում իրենց արտաաշխատանքային և ազատ ժամանակը։ Աշխատավորների ազատ ժամանակի մեծ մասը անցնում է անարդյունավետ զբաղմունքներում (հյուրագնացություններում, տնային խաղերում և այլն), իսկ ֆիզկուլտուրայի և սպորտի համար, օրինակ, շատ չնչին ժամանակ է հատկացվում (հատկապես կանայք)։ Ազատ ժամանակի ամենաարժեքավոր ծախսումները, ինչպիսիք են ինքնազարգացումը, ինքնակրթությունն ու ուսումը, կինո-թատրոն հաճախելը, ընթերցումը, որակավորման բարձրացումը և այլն, միասին վերցրած չեն հավասարվում անգամ վերոհիշյալ տիպի զբաղմունքներին նվիրվող ժամանակի մեծության կեսին։ Չափազանց քիչ է նաև որսորդությանը, ձկնորսությանը, արվեստին, կոլեկցիաներ հավաքելուն հատկացվող ժամանակը։

Արտաաշխատանքային ժամանակի, այդ թվում հատկապես ազատ ժամանակի ողջ ֆոնդի օգտագործման այդպիսի վիճակը դառնում է առավել անհանդուրժելի, երբ աշխատանքային 5-օրյա շաբաթվա ներդրման շնորհիվ տվյալ ժամանակների ներքին կազմության և մեծությունների միջև տեղի են ունենում զգալի փոփոխություններ։

Ի՞նչն է խանգարում աշխատավորներին՝ առավել ռացիոնալ օգտագործելու իրենց արտաաշխատանքային, այդ թվում և ազատ ժամանակը։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ դրանց պատճառը աշխատավորների կենցաղսպասարկման ճյուղերի գործունեությունում դեռևս գոյություն ունեցող մի շարք թերություններն են։ Այսպես, օրինակ, կենցաղսպասարկման ձեռնարկությունների մեծ մասը դեռևս մանր են, իսկ նրանց ներքաղաքային տեղաբաշխումն անհամաչափ է, որն, անշուշտ, դժվարացնում է նրանց ծառայությունները։ Շատ ձեռնարկությունների ղեկավարներ չեն ուսումնասիրում բնակչության պահանջմունքները, որի հետևանքով աշխատավորների պահանջմունքները, որոշ ծառայությունների գծով, չեն բավարարվում։ Դրանք, առաջին հերթին, կոմունալ-կենցաղային և բժշկական սպասարկման, նախադպրոցական հիմնարկների, առևտրի և հասարակական սննդի ու ներքաղաքային տրանսպորտի ծառայությունների բնագավառներն են։ Առավել մեծ թերություններ կան ակումբների, գրադարանների, կուլտուրայի ու հանգստի զբոսայգիների, կինոների և թատրոնների ու ֆիզկուլտ կազմակերպությունների աշխատանքում։ Սրանք իրենց ունեցած հնարավորությունների սահմանում անբավարար են սպասարկում աշխատավորներին։ Այսպես, հանրապետության քաղաքների ո՛չ մի կինո-թատրոն իր սրահները, դահլիճները, բացի կինոցուցադրումներից, չի տրամադրում ինքնագործունեության համերգներ, դասախոսություններ, նշանավոր մարդկանց հետ հանդիպումներ և այլ միջոցառումներ կազմակերպելու համար. չկան շրջիկ կինոներ (բակերում և գործարանային արտադրամասերում կինոնկարներ ցուցադրելու համար)։ քիչ են երեխաների համար խաղի և խնամքի սենյակներ, ամուրիների, միայնակ մայրերի, տնային տնտեսուհիների ակումբներ, երիտասարդական ակումբ-սրճարաններ։

Եղած ակումբներն ու կուլտուրայի տները վատ են կազմակերպում աշխատավորների կոլեկտիվ հանգիստը։ Նրանք իրենց միջոցառումների գրաֆիկները չեն կազմում գործարանների աշխատանքի հերթափոխային բնույթի

հիման վրա։ Թանգարանները գործարանային արտադրամասերում, հանրակացարաններում, մեծ բակերում քիչ են կազմակերպում շրջիկ ցուցահանդեսներ։ Գրադարաններում չեն կիրառում սպասարկման այնպիսի առաջավոր ձևեր, ինչպիսիք են՝ բնակարանային-շրջիկ ընթերցարանները և այլն։ Հանգստի և կուլտուրայի զբոսայգիներն անբավարար են օգտագործվում աշխատողների կոլեկտիվ հանգստի մասսայական միջոցառումներ անցկացնելու համար։ Դեռևս թույլ հիմքերի վրա է դրված սպորտը (հատկապես ջրային ու ձմեռային սպորտը, գեղարվեստական մարմնամարզությունը, ալպինիզմը. տուրիզմը և այլն)։

Այս ամենը վկայում են, որ հանրապետության աշխատավորների կյանքը, կենցաղն ու հանգիստը սպասարկող ոլորտի տարբեր բնագավառներում իսկապես դեռևս կան մի շարք լուրջ թերություններ, որոնց վերացումը հիմա արդեն դառնալու է հասարակության ամենալուրջ հոգսերից մեկը։

Հանրապետության ձեռնարկություններում, հիմնարկություններում երկու հանգստյան օրով աշխատանքային շաբաթի անցնելը նոր, միանգամայն բարեբար պայմաններ է ստեղծում իրոք բարելավելու աշխատավորների կենցաղի և հանգստի հասարակական սպասարկումը։

Երկու հանգստյան օրով, 5-օրյա աշխատանքային շաբաթին անցնելու հետևանքով ստեղծվող նոր պայմաններում, աշխատավորների արտաաշխատանքային ժամանակի օգտագործումն ավելի ռացիոնալ դարձնելու նպատակով ներկայումս անհրաժեշտ է հրատապորեն ձեռք առնել մի շարք լուրջ միջոցներ։ Ամենից առաջ (քաղաքի մասշտաբով) պետք է մշակվեն աշխատավորների ու արտադրական կոլեկտիվների շահերին լիովին համապատասխանող ծառայությունների ոլորտի բոլոր օբյեկտների աշխատանքային սկզբի և ավարտի գրաֆիկներ։ Ներքաղաքային տրանսպորտի որոշ մարշրուտների համար անհրաժեշտություն կլինի կիրառել տրամվայների, տրոլեյբուսների, ավտոբուսների աշխատանքի ավելի երկարացված ժամեր։

Նախադպրոցական հիմնարկներն, անշուշտ, նույնպես կարող են հանգստանալ շաբաթ և կիրակի օրերին։ Քաղաքային պոլիկլինիկաները, մանկական և կանացի կոնսուլտացիաները պետք է աշխատեն շաբաթվա բոլոր օրերը։ Ինչ վերաբերում է առևտրի, հասարակական սննդի և կենցաղ-սպասարկման օբյեկտների աշխատանքի գրաֆիկին, ապա, օրինակ, Լենինգրադում երկհերթ և մեկուկես հերթ աշխատող օբյեկտների աշխատողների համար սահմանվել են երկու հանգստյան օրեր՝ շարժուն գրաֆիկների հիման վրա, իսկ մեկ հերթ աշխատող օբյեկտների համար թողնված է նախկին 6-օրյա աշխատաշաբաթի սիստեմով—կիրակին որպես ընդհանուր հանգստյան օր։ Այստեղ արդյունաբերական ապրանքների խանութները աշխատանքը սկսում են ժ. 11-ին և ավարտում 20—21-ին, 1 ժամ ընդմիջումով։ Ընդհանուր հանգստյան օրը կիրակին է, իսկ երկրորդը՝ շարժուն գրաֆիկով։ Հիմնարկ-ձեռնարկությունների և ուսումնական հաստատությունների ճաշարաններն ու բուֆետները աշխատում են տվյալ ձեռնարկությունների ռեժիմով։ Կոմունալ-կենցաղային և բժշկական սպասարկման օբյեկտները երկարացրել են երեկոյան աշխատաժամերը, ունեն միասնական հանգստյան օրեր՝ կիրակի և երկուշաբթի։

Հասարակության անդամներին մատուցվող ծառայությունների ծավալի ու տեղաբաշխման, մյուս կողմից՝ նրանց ժամանակի օգտագործման միջև ավելի սերտ կոորդինացում և փոխադարձ համաձայնեցում ստեղծելուց հետո, անհրաժեշտ է ձեռնամուխ լինել արտաաշխատանքային ժամանակի պլանավորմանը։ Նման պլանավորումը հնարավոր է կիրառել ժամանակի հիմնական ծախսումների համար գիտականորեն հիմնավորված նորմատիվներ մշակելով և դրա հիման վրա ըստ տերիտորիալ վարչական շրջանների՝ աշխատավորների ժամանակի հաշվեկշիռներ կազմելով։ Արտաաշխատաժամանակի օգտագործումը ռացիոնալացնելու գործում կարևոր է նաև աշխատավորների ներկա ապրելաձևում մի շարք փոփոխությունների մուծումը։ Անհրաժեշտ է վերանայել սովետական ժողովրդի պաշտոնական տոների օրերը, արմատապես բարելավել դրանք նշելու ձևերն ու մեթոդները։

Ինչ վերաբերում է բուն ազատ ժամանակի ռացիոնալ օգտագործմանը, ապա այս բնագավառում կարելի է առաջարկել հետևյալ միջոցառումները, որոնց կիրառումը նույնպես վաղուց հասունացել է։ Հանդիսատեսային բոլոր հաստատությունների (բացի կինոթատրոններից և կրկեսից) միայն երեկոներն աշխատելու ռեժիմը չի բավարարում երեկոյան և գիշերային հերթափոխություններում աշխատող բանվորներին ու ծառայողներին։ Հետևաբար, անհրաժեշտ է այդ ձեռնարկությունները փոխադրել երկհերթ աշխատելու ռեժիմին, որն, անշուշտ, հնարավոր կդարձնի էժանացնել տոմսերի գները։ Աշխատավորներին հանդիսատեսային հաստատություններում ավելի շատ ներգրավելու նպատակով անհրաժեշտ է կիրառել, այսպես կոչված, պատվիրատրվող տոմսերի սիստեմը։ Տոմսերի ավելի ռացիոնալ վաճառքը ապահովելու համար հարկավոր է ստեղծել միասնական դրամարկղեր, ընդ որում կազմակերպելով տոմսերի նախնական վաճառք ոչ միայն ներկայացումների և համերգների, այլև կինոյի համար, լայնորեն կիրառելով հեռախոսով ու նամակներով պատվերներ ընդունելու և պատվիրված տոմսերը հասցեատերերին առաքելու պրակտիկան։

Գազիֆիկացված բնակարանների թիվը (հազ. բն.)




Աշխատավորներին լրացուցիչ կինոծառայություն մատուցելու նպատակով խոշոր կինոթատրոններին կից պետք է ստեղծել շրջիկ կինոների հատուկ ցանց, որոնք մեծ բակերում, պուրակներում, հրապարակներում, մայրուղիներում ձրի ցուցադրեն գիտահանրամատչելի, դատական-իրավաբանական, հակակրոնական, սանիտարա-բժշկական և պրոպագանդիստական այլ կինո-ժուռնալներ, վավերագրական նկարներ, կինոպատմվածքներ, ինչպես և կինո-ռեպորտաժներ՝ ձրիակերների, սպեկուլյանտների, կաշառակերների, նյութեր թեթև հեծելազորի, ժողովրդական վերահսկողության կոմիտեների արշավանքների մասին և այլն։

Ակումբային հիմնարկների այժմյան ցանցում բազմազանություն չկա, այդ պատճառով էլ դրանք աշխատավորներին քիչ են գրավում։ Մեր կարծիքով Միությունում, ինչպես և մեր հանրապետությունում անհրաժեշտ է ստեղծել նեղ մասնագիտացված պրոֆիլների կամավոր ակումբների լայն ցանց։ Ակումբային ձեռնարկությունները պետք

է անցնեն երկհերթ աշխատանքային ռեժիմի, որպեսզի բոլոր միջոցառումներն անցկացվեն ո՛չ միայն երեկոյան, այլև ցերեկային ժամերին։ Այն ձեռնարկությունների ու հիմնարկները, որոնք չունեն իրենց սեփական ակումբները, դրանց պետք է թույլատրել անվճար օգտագործելու ակումբների աղատ սրահներն ու հարմարությունները, հատկապես երեկոյան ժամերին պարապ մնացող այն սրահներից (դասախոսությունների, նիստերի, ցուցահանդեսների դահլիճները, սալոնները և այլն), որոնք պատկանում են ձեռնարկություններին, գերատեսչություններին և հիմնարկներին։ Նյութական շահագրգռվածության սկզբունքը պետք է կիրառել ակումբների, կուլտուրայի պարկերի և թանգարանների աշխատողների համար։ Աշխատավարձը սահմանելիս անհրաժեշտ է հաշվի առնել օբյեկտների աշխատանքային ծավալը։ Պարգև վարձատրություններ պետք է տրվեն ոչ միայն ղեկավարությանը, այլև այդ օբյեկտների բոլոր աշխատողներին։

Անհրաժեշտ է երեք տարին մեկ հայտարարել մեծահասակների համար նոր, ավելի հետաքրքրական և իմաստալից խաղեր ստեղծելու հանրապետական կոնկուրսներ ու լավագույն խաղերն անհապաղ տարածել և կիրառել, դուրս գցելով պրակտիկայից լոտոն, թղթախաղերը և անիմաստ այլ խաղերը։

Ահա մոտավորապես այն հոգսերը, որոնք ծառանում են հասարակության առջև հնգօրյա աշխատաշաբաթը հանրապետության հիմնարկ-ձեռնարկություններում լայնորեն կիրառելու կապակցությամբ։ Հետևաբար, հանրապետության կուսակցական, արհեստակցական և կոմերիտական կազմակերպությունները, սովետական, տնտեսական օրգանները համատեղ և միացյալ ուժերով պետք է լուծեն հասարակության առջև ծառացող վերոհիշյալ խնդիրները։ Միայն այդ դեպքում աշխատաշաբաթի նոր սիստեմի գործադրումը իրեն լրիվ կարդարացնի։

Հ. ՊԵՏՐՈՍՅԱՆ
ՀՍՍՀ Պետպլանի էկոնոմիկայի և պլանավորման ինստիտուտի ծառայությունների ոլորտի բաժնի վարիչ՝ տնտ. գիտ. թեկնածու

## ԱՆԴՐԿՈՎԿԱՍՅԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ՎԱՌ ՕՐԻՆԱԿԸ

Մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո կուսակցությունը Լենինի գլխա-
վորությամբ մշակեց ժողովուրդների միավորման ու համագործակցության
նոր ձևեր, նպատակ ունենալով ստեղծել և կազմակերպել Սովետական բազմ-
ազգ ֆեդերատիվ պետություն։ 1919 թվականի մարտին կուսակցության VIII
համագումարը քննարկեց սովետական ֆեդերատիվ պետության մեկ տարվա
փորձը, և անհրաժեշտություն համարեց շարունակել սովետական պետական
շինարարությունը ֆեդերացիայի սկզբունքով։ Համագումարի ընդունած ծրա-
գրում ասված է, որ լիակատար միասնության հասնելու համար կուսակցու-
թյունը, որպես անցման ձևերից մեկը, առաջադրում է սովետական տիպով
կազմակերպված պետությունների ֆեդերատիվ միավորումը։
Սովետական հանրապետությունների միավորումը մեկ ֆեդերատիվ պե-
տության կազմի մեջ բխում էր այն օբյեկտիվ պայմաններից, որում նրանք
գտնվում էին տվյալ շրջանում. նախ՝ նրանց շրջապատում էր միջազգային իմ-
պերիալիզմը, որն ստեղծում էր մշտական հարձակման վտանգ, մյուս կող-



մից՝ նրանց առանձին-առանձին գոյությունը հնարավորություն չէր տալիս
վերականգնելու իրենց քայքայված ժողովրդական տնտեսությունը և լուծելու
սոցիալիզմի կառուցման պրոբլեմները։ Ահա թե ինչու կենսական խնդիր էր
ազատագրված ժողովուրդներին միավորվել եղբայրական մեկ ընտանիքում,
հենվելով նրանց փոխադարձ վստահության ու կամավոր համաձայնության
վրա։ Այդ առթիվ կուսակցության X համագումարի որոշումներում ասված է.
«Սովետական հանրապետությունների մեկուսացած գոյությունն անկայուն,
անհաստատ է կապիտալիստական պետությունների կողմից նրանց գոյու-
թյան դեմ եղած սպառնալիքի հետևանքով։ Սովետական հանրապետություն-
ների պաշտպանության ընդհանուր շահերը, մի կողմից, պատերազմից քայ-
քայված արտադրաուժերի վերականգնման խնդիրը, մյուս կողմից, և սովե-
տական հացառատ հանրապետությունների կողմից սակավահաց հանրապե-
թյուններին ցույց տրվելիք անհրաժեշտ պարենային օգնությունը, երրորդ կող-
մից,— հրամայաբար թելադրում են առանձին սովետական հանրապետություն-
ներից կազմել պետական միություն, որպես իմպերիալիստական ստրկացումից
ու ազգային ճնշումից փրկվելու միակ ուղի։ «Իրենց» և «օտար» բուրժուազիա-
յից ազատագրված ազգային սովետական հանրապետությունները կարող են
իրենց գոյությունը պահպանել և իմպերիալիզմի միացյալ ուժերին հաղթել՝
միայն սերտ պետական միություն կազմելով կամ նրանք ամենևին չեն հաղթի»
(ՍՄԿԿ-ն բանաձևերում և որոշումներում, մաս I, էջ 711)։

Սովետական հանրապետությունների համագործակցության լավագույն
օրինակներից մեկն ավելի քան 45 տարի առաջ ստեղծված Անդրկովկասյան
հանրապետությունների ֆեդերացիան էր։

Անդրկովկասում ցարիզմի մեկ դարից ավելի տիրապետությունը ոչնչով
չօժանդակեց երկրամասի ժողովուրդների տնտեսական, քաղաքական և կուլ-
տուրական կյանքի զարգացմանը։ Դեռ ավելին, ժողովրդական մասսաները
ծայրաստիճան ստրկացված ու հարստահարված վիճակում էին գտնվում։
«Ռուսական կապիտալիզմը,— գրում էր Լենինը,— Կովկասը ներգրավում էր
համաշխարհային ապրանքաշրջանառության մեջ, համահարթում հինավուրց
նահապետական ինքնամփոփվածության մնացորդ հանդիսացող նրա տեղա-
կան առանձնահատկությունները, իր գործարանների համար շուկա էր ստեղ-
ծում» (Երկեր, հատ. 3, էջ 771)։

Միայն Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունն ազատագրեց Անդրկովկա-
սի ժողովուրդներին ցարիզմի գաղութային վիճակից և լայն հնարավորու-
թյուններ բացեց նրանց կյանքի բոլոր ասպարեզների զարգացման համար։
Երկրամասի հանրապետություններում սովետական կարգերի հաստատման
հենց սկզբից անհրաժեշտ պայմաններ ստեղծվեցին ֆեդերացիայի ստեղծ-
ման համար։ Անդրկովկասյան հանրապետություններում սովետական կար-
գերի հաստատման մոտ երկու տարվա պրակտիկան ցույց տվեց, որ նրանց
անջատ-անջատ գոյությունը դժվարացնում է երկրամասում ժողովրդական
տնտեսության վերականգնումը։

Անդրֆեդերացիայի տնտեսական նախադրյալներն ստեղծվեցին դեռևս
1921 թվականի առաջին կեսին. նախ՝ 1921 թվականի ապրիլին ստեղծվեց
երեք հանրապետությունների երկաթուղային տրանսպորտի միասնական
վարչությունը, իսկ 1921 թվականի հունիսին՝ Անդրկովկասի արտաքին առև-
տրի միությունը։ Տնտեսական երկու բնագավառների միացման փորձը, սա-
կայն, ցույց տվեց, որ առանց քաղաքական միավորման, այդ միացումն ան-

հրամեշտ արդյունք չի տա։ Ահա թե ինչու 1921 թվականի նոյեմբերի 3-ին ՌԿ(բ)Կ Կովկասյան բյուրոն քննարկեց Լենինի առաջարկը՝ Անդրֆեդերացիա ստեղծելու մասին և իր որոշման մեջ նշեց, որ երկրամասի հանրապետությունների միջև քաղաքական և տնտեսական սերտ դաշնակցությունը կամրապնդի սովետական իշխանության դիրքերը Միջին Արևելքի սահմանագլխին, կուժեղացնի նրանց ռազմական ու տնտեսական հզորությունը և կայուն հիմքերի վրա կդնի աշխատավորական մասսաների եղբայրական համերաշխությունը Անդրկովկասում։ Անդրֆեդերացիայի ստեղծման լենինյան առաջարկը դրվեց նաև երկրամասի աշխատավորական լայն մասսաների քննարկմանը և միահամուռ հավանության արժանացավ։

1922 թվականի փետրվարի 18-ին Թիֆլիսում բացվեց Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունների միացյալ համագումարը, որտեղ Անդրֆեդերացիայի ստեղծման մասին զեկուցումով հանդես եկավ Ս. Օրջոնիկիձեն։ Նա ասաց, որ Երկրամասի հանրապետություններում նոր սոցիալիստական հասարակություն կառուցելու ոչ մի հնարավորություն չկա. նրանցից ոչ մեկը չունի տնտեսական պայմաններ սոցիալիզմի պրոբլեմները լուծելու համար. առանց անդրկովկասյան հանրապետությունների սերտ համագործակցության և Սովետական Ռուսաստանի եղբայրական օգնության, մենք չենք կարող մի քայլ անգամ առաջ ընթանալ (ՄԼԻ վրացական ֆիլիալի արխիվ, ֆ. 13, գործ 1, թ. 4)։ Համագումարում ողջույնի խոսքով հանդես եկան Ալ. Մյասնիկյանը, Ֆ. Մախարաձեն և Ա. Կարաևը, որոնք հավանություն տվին Անդրֆեդերացիայի նախագծին, որպես երկրամասում սոցիալիզմի կառուցման պայմաններից բխող օբյեկտիվ անհրաժեշտություն։ Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունների համագումարը հաստատեց ֆեդերացիայի կազմակերպման նախագիծը։

1922 թվականի մարտի 12-ին Թիֆլիսում երեք եղբայրական հանրապետությունների ներկայացուցիչների կողմից ստորագրվեց Անդրֆեդերացիայի ստեղծման մասին պայմանագիրը, որի մեջ նշված էր. հաշվի առնելով երկրամասի ռազմական պաշտպանության և նոր հասարակարգի կառուցման խնդիրները, Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի սովետական հանրապետությունները տնտեսական, քաղաքական և ռազմական դաշինք են կնքում։ Պայմանագրի համաձայն ֆեդերացիայի խորհրդի իրավասության տակ անցան ռազմական գործերը, ֆինանսները, արտաքին քաղաքականությունն, արտաքին առևտուրը, երկաթուղային ճանապարհները, կապի միջոցները։ Անդրկովկասի ֆեդերացիայի ստեղծումը վերջ տվեց այդ հանրապետությունների քաղաքական անջատվածությանն ու տնտեսական թուլությանը, ամրապնդեց երկրամասի ժողովուրդների միջև եղբայրական ամուր դաշինքը և ճանապարհ հարթեց հետագա լայն համագործակցության համար։

Անդրկովկասյան հանրապետություններում ֆեդերացիայի տնտեսական համագործակցության լավագույն ձևերից մեկը նրա արտաքին առևտուրն էր, որ տնտեսական և քաղաքական կարևոր դեր է խաղացել։ Դրա միջոցով լուծվում էին ո՛չ միայն երկրամասի արտաքին ապրանքաշրջանառության, այլև ֆեդերացիայի մեջ մտնող հանրապետությունների քաղաքական-անկախության հետ կապված մի շարք կարևոր խնդիրներ։ Ամենից առաջ անդրֆեդերացիան արտաքին առևտրի միջոցով կարողացավ ժամանակին մոբիլիզացնել հանրապետությունների արտամուծման ապրանքները և իրացնել արտասահմանյան շուկաներում, որից ստացած եկամուտները ներդրեց երկրամասի ժողովրդական տնտեսության վերականգնման և սոցիալիզմի կառուցման մեծ գործի իրականացմանը։ Արտաքին առևտրի մոնոպոլիայի միջոցով դուրս մղվեց մասնավոր կապիտալը և Անդրֆեդերացիայի հանրապետությունների արտաքին տնտեսական կապերի զարգացման համար լայն հեռանկարներ բացվեց։ Ֆեդերացիայի գոյության ժամանակաշրջանում երկրամասի արտաքին առևտրի ժողկոմատի առևտրական կազմակերպությունների միջոցով արտասահմանյան շուկաներում՝ ԱՄՆ-ում, Անգլիայում, Գերմանիայում, Ֆրանսիայում, Իտալիայում, Թուրքիայում, Իրանում և այլ երկրներում իրացվեցին եղբայրական հանրապետությունների արտահանության ապրանքներից՝ նավթամթերքներ, մանգան, պղնձի ջարդոն, ծխախոտ, բուրդ, մետաքսեղեն, գորգեր, մորթեղեն, կաշի, գինի, տուֆ, պեմզա-բազալտ և այլ ապրանքներ։ Արտահանության ապրանքների իրացումից ստացված արտասահմանյան վալյուտային մուտքերը կազմեցին 1.810,5 միլիոն ռուբլի կամ տվյալ շրջանի ամբողջ ապրանքաշրջանառության մոտ 79 տոկոսը, 1·322,7 միլիոն կազմեց առևտրական ակտիվ բալանսի սալդոն, որը մուծվեց երկրի վալյուտային ոսկյա ռեզերվը որպես սոցիալիստական կուտակման միջոց և հանդիսացավ երկրամասում սոցիալիզմի կառուցման կարևոր գործոններից մեկը։

Ներմուծական առևտուրը ֆեդերացիայի գոյության հենց առաջին տարվանից ծառայեց երկրամասի ժողովրդական տնտեսության զարգացմանն ու սոցիալ-տնտեսական կարևոր խնդիրների լուծմանը։ Արտասահմանից ներմուծվեց երկրամասի արդյունաբերության, գյուղատնտեսության և տրանսպորտի ամենատարբեր ճյուղերի համար 393,3 միլիոն ռուբլու տեխնիկական սարքավորումներ, որը կազմում էր ամբողջ իմպորտի ավելի քան 80 տոկոսը։ Ներմուծված տեխնիկական սարքավորումների միջոցով վերականգնվեցին և տեխնիկայի նորագույն սարքավորումներով վերակառուցվեցին երկրամասի հանքային արդյունաբերական ճյուղերը (նավթ, պղինձ և մանգան արդյունահանող)։ Միայն առաջին հնգամյակում ներմուծված սարքավորումների հաշվին երկրամասում կառուցվեցին 103 տնտեսական ձեռնարկություններ։

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման երկրորդ հնգամյակում ներմուծվող սարքավորումների միջոցով Անդրկովկասի հանրապետություններում ստեղծվեցին ծանր արդյունաբերական ձեռնարկություններ, որոնց շնորհիվ վերջնականապես վերացավ մեր էկոնոմիկայի կախվածությունը կապիտալիստական երկրների տնտեսությունից. երկրամասում լուծվեցին սոցիալիզմի կառուցման գլխավոր խնդիրները։

Երկրորդ հնգամյակի վերջում Անդրկովկասի գլխավոր կենտրոններում շահագործման հանձնվեցին՝ Բաքվում նավթարդյունաբերության սարքավորումների, Երևանում՝ կաուչուկի և Թբիլիսիում՝ դազգահաշինական գործարանները։ Նշված փաստերը ցույց են տալիս, որ ներմուծումը ևս խթան հանդիսացավ երկրամասի սոցիալիստական շինարարության առաջընթացին, որի շնորհիվ կարճ ժամանակամիջոցում ցարիզմի երբեմնի հետամնաց կիսագաղութային ծայրամասը վերածվեց ինդուստրիալ ագրարային երկրի։ Այս հանգամանքն արդյունք էր արտադրության միջոցների հանրային սոցիալիստական սիստեմի, որը հնարավորություն ընձեռեց երկրամասի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աննախընթաց զարգացմանը։

Արտաքին առևտրից ստացած եկամուտների և արտադրական ներմուծման նշանակության մասին ՍՍՀՄ արտաքին առևտրի ժողկոմ Ա. Ի. Միկոյանը նշում էր. «Արտաքին առևտուրը ծառայում է որպես միջոց օգտագործելու

զարգացած կապիտալիստական երկրների նյութական, տեխնիկական և կուլտուրական ռեսուրսները՝ տնտեսության սոցիալիստական շինարարության համար» (Ա. Ի. Միկոյան, Էքսպորտի նշանակությունը ՍՍՀՄ ժողտնտեսության համար: 1928 թ., էջ 16)։

Քաղաքական տեսակետից Անդրֆեդերացիան երկրամասի ժողովուրդների բարեկամության մի վառ օրինակ էր։ Այն հնարավորություն ստեղծեց երեք հանրապետությունների միջև ընդլայնելու բարոյա-քաղաքական և կուլտուրական կապերը։ Տնտեսական տեսակետից ֆեդերացիան պրոլետարական ինտերնացիոնալիզմի կարևոր պրակտիկ նվաճումներից մեկն էր սոցիալիզմի կառուցման ճանապարհին։ Անդրկովկասյան հանրապետությունների համագործակցությունը հնարավորություն ընձեռեց ստեղծելու հզոր սոցիալիստական էկոնոմիկա, ապահովել երկրամասի արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության և տեխնիկայի բուռն զարգացումը։

Անդրֆեդերացիայի կառավարական օրգանները, կուսակցության Անդրերկրկոմի գլխավորությամբ, ճիշտ և ժամանակին իրականացրին կուսակցության դիրեկտիվներն ու լենինյան ազգային քաղաքականությունը՝ երկրամասի ժողովուրդների տնտեսական, քաղաքական և եղբայրական կապերի, ինչպես նաև նրանց միջև ստեղծված բարոյա-քաղաքական միասնության ամրապնդման ու բարգավաճման գործում։

Ինչպիսի անհրաժեշտությամբ որ ստեղծվեց Անդրֆեդերացիան, նույնպիսի անհրաժեշտությամբ հնարավոր դարձավ նրա լիկվիդացումը, որը բխում է ֆեդերացիայի հանրապետությունների զարգացման տվյալ էտապի մակարդակից։ Սոցիալիզմն արդեն հաղթանակել էր այդ ժողովուրդների կյանքի գրեթե բոլոր ասպարեզներում, ֆեդերացիայի հանրապետություններն առաջ ընթանալով ու զարգանալով դարձել էին անառիկ ամրոցներ Սովետական Միության Միջին Արևելքի սահմաններում։

Անդրֆեդերացիայի լիկվիդացումից հետո, անցել է ավելի քան 31 տարի։ Կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականության շնորհիվ Անդրկովկասյան հանրապետությունները ներկա էտապում դարձել են Սովետական Միության ինդուստրիալ շրջանները և ՍՍՀՄ մնացած եղբայրական ժողովուրդների հետ կոմունիզմի նյութատեխնիկական բազան են կառուցում։

Ներկա էտապում անդրկովկասյան հանրապետությունները գտնվում են տնտեսական սերտ համագործակցության մեջ, որը նրանց հնարավորություն է ընձեռում համատեղ լուծելու երկրամասի էկոնոմիկայի կենսական պահանջներից բխող մի շարք տնտեսական կարևոր հարցեր։ Այս հանրապետությունները համատեղ օգտագործում են Անդրկովկասի սև մետալուրգիան, նավթի և պղնձի արդյունաբերական ճյուղերի արտադրանքը։

Երկրամասի հանրապետություններում ստեղծված է միասնական գազամուղ՝ Կարադաղի գազի հանքերի բազայի վրա. գրեթե ավարտված է Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի միասնական էներգասիստեմի ստեղծումը, որը էներգետիկ ռեսուրսները համագործակցած օգտագործելու լայն հնարավորություններ է ստեղծում։

Անդրկովկասի հանրապետությունների շրջանակներում իրականացված է արդյունաբերական կարևոր ճյուղերի՝ էլեկտրատեխնիկական, սարքաշինական, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների, դազգահաշինական, ինչպես նաև բամբակեղենի, բրդեղենի, մետաքսեղենի և այլ արտադրությունների մասնագիտացումն ու կոոպերացումը։



Անդրկովկասյան հանրապետությունների ժամանակակից ձեռնարկությունները զինված են առաջավոր տեխնիկայով և գիտա-տեխնիկական բարձրորակ մասնագետներով, որոնց արտադրանքը լայն ընդունելության է արժանանում գրեթե բոլոր մայր ցամաքներում։ Այժմ Ադրբեջանից արտահանվում է 280 անուն ապրանք, որոնք սպառվում են ավելի քան 56 երկրներում, Հայաստանից՝ 150, 70 երկրներում, իսկ Վրաստանից՝ 160 անուն՝ 66 երկրներում։

Եթե ֆեդերացիայի գոյության ժամանակաշրջանում Անդրկովկասը մըշտական տեխնիկական սարքավորումների ներմուծող էր և ձգտում էր անկախ լինել կապիտալիստական տնտեսական կախումից, ապա այժմ երկրամասի հանրապետությունները, շնորհիվ իրենց տեխնիկական զարգացման բարձր մակարդակի, դարձել են արդյունաբերական բոլոր տեսակի սարքավորումների արտահանողներ, որոնց արտադրանքը ճանաչում են գտել գրեթե երկրագնդի բոլոր շրջաններում։

ՍՍՀՄ փորձով ամբողջ աշխարհն է համոզվում լենինյան ազգային քաղաքականության կենսականության մեջ։ Մեր երկրում ազգային հարցի լուծումն անհերքելիորեն ցույց տվեց, որ ակտիվ և ինքնուրույն պատմական ստեղծագործությունը սոսկ «ընտրյալ ազգերի» սեփականությունը չէ և մատչելի է բոլոր ժողովուրդներին։ Սովետական բազմազգ սոցիալիստական պետությունը գործնականում ցուցադրում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների հաղթանակը։

Հ. ԳՐԱԲՍԿԻ

## ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՆԿԱՏՄԱՄԲ

Սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրից Հայաստանի կոմունիստական կուսակցությունն ու կառավարությունը ժողովրդական տընտեսության վերականգնման ուղղությամբ ձեռնարկած միջոցների հետ միասին, մտահոգվեցին նաև աշխատավորների սոցիալական ապահովության գործի կազմակերպմամբ և բարելավմամբ։

Հանրապետության սոցիալական ապահովության նորաստեղծ ժողկոմատի առջև խնդիր դրվեց՝ գործնական աշխատանք ծավալել ո՛չ միայն իմպերիալիստական և քաղաքացիական պատերազմների հաշմանդամների, զոհված մարտիկների ընտանիքների ու ծերերի կենսաթոշակների ապահովության, այլև հաշմանդամների պրոտեզավորման, ուսուցման, աշխատանքի տեղավորման, հաշմատների ստեղծման և անապաստան երեխաների նյութական ապահովության հարցերի արագ լուծման համար։ Քաղաքներում ու գավառներում ստեղծված սոցիալական ապահովության բաժիններին կից կազմակերպվեցին հանշմանդամներին ձրի սնունդ մատակարարող կայաններ։ 1921 թվականին կենսաթոշակ էին ստանում 450 հոգի։

Այդ թվականին կազմակերպվում է հաշմանդամների պրոտեզավորման գործը, ստեղծվում աշխատանքային դպրոցներ, պրոֆտեխնիկական արհեստանոցներ, իսկ անապաստանների համար՝ մանկատներ։ 1924 թվականին հաշմանդամների համար հիմնվում են առաջին արտելները, կոոպերատիվ միությունը։ 1922 թվականին ստեղծված գյուղացիական փոխօգնության կոմիտեները նույնպես լուրջ օգնություն էին տալիս անաշխատունակ գյուղացի-

ներին: Դրանց թիվը 1924 թվականին հասնում էր 880-ի: Այս և այլ կարգի միջոցառումների շնորհիվ տարեցտարի բարելավվում է հաշմանդամների, ծերերի և անապաստան երեխաների նյութական ապահովության գործը:

Սովետական ժողովուրդը ՍՄԿԿ ղեկավարությամբ հսկայական հաջողություններ է ձեռք բերել երկրի արտադրաուժերի զարգացման, էկոնոմիկայի ամրապնդման բնագավառում: Դա հնարավորություն ընձեռեց սիստեմատիկ անդրադառնալու ժողովրդի բարեկեցության, նրա աճող պահանջմունքների բավարարման հարցերին:

Հայտնի է, որ ՍՍՀՄ գերագույն սովետի նախագահության 1956 թվականի՝ պետական կենսաթոշակների մասին ընդունած օրենքով բարձրացվեցին կենսաթոշակների չափերը, վերացվեցին մի շարք սահմանափակումներ: Արտադրության որոշ ճյուղերի բանվորներին և ինժեներա-տեխնիկական աշխատողներին իրավունք տրվեց ծերության և հաշմանդամության կենսաթոշակ ստանալու ոչ լրիվ ստաժով, ինչպես նաև արտոնյալ պայմաններով ու չափերով: Եթե 1956 թվականին կային ընդամենը 182477 կենսաթոշակառուներ և բազմազավակ ու միայնակ մայրեր, ապա վերջին տասնամյակում այն հասավ ավելի քան 328 հազարի:

Պետական կենսաթոշակների մասին օրենքն իր հետագա զարգացումը գտավ կառավարության մի շարք նոր միջոցառումներում: ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը 1964 թվականի դեկտեմբերի 31-ին հրամանագիր ընդունեց «I և II խմբի հաշմանդամների և կերակրողը կորցրած ընտանիքների պետական կենսաթոշակների նվազագույն չափերը բարձրացնելու մասին», որով սահմանվեցին կենսաթոշակների նվազագույն և կայուն նոր, ավելի բարձր չափեր: Այդ հրամանագրով I խմբի Հայրենական պատերազմի և զինհաշմանդամների համար սահմանվեց կենսաթոշակի հիմնական չափը (առանց հավելումների)՝ 50 ռ. ոչ պակաս, նախկին 36 ռ. փոխարեն: II խմբի համար՝ 35 ռ. 28 ռ. 50 կոպեկի փոխարեն: Իսկ III խմբին՝ 21 ռուբլուց ոչ պակաս: Ընդհանուր հիվանդության պատճառով I խմբի աշխատանքային հաշմանդամներին նախկինում եղած 30 ռ. փոխարեն սահմանվեց 50 ռ., II խմբինը 23 ռ. փոխարեն 30 ռ. և այլն: Բարձրացվեցին նաև կերակրողը կորցրած ընտանիքների կենսաթոշակների չափերը, այն է՝ ընտանիքի երեք անդամի համար 50 ռ., 30 ռ. փոխարեն, երկու անդամի համար՝ 30 ռ. և այլն:

1965 թվականի մարտի 6-ին ՍՍՀՄ Մինիստրների սովետը որոշում ընդունեց «Հայրենական պատերազմի հաշմանդամների և պատերազմում զոհված զինծառայողների ընտանիքների անդամների արտոնությունների ընդլայնման մասին», որով սահմանվեցին քաղաքային տրանսպորտից անվճար օգտվելու տոմսեր, կարգավորվեց նրանց աշխատանքի տեղավորելու հարցը, սահմանվեց զեղչված գներով դեղորայքի ստացումը, բարելավվեցին բուժսպասարկման, բնակկենցաղային պայմանները և այլն:

Սկսած 1967 թվականից յուրաքանչյուր տարի հոկտեմբերի 1-ից մինչև հաջորդ տարվա մայիսի 15-ը ընկած ժամանակամիջոցի համար սահմանվել է նաև սեզոնային ուղևորության տոմսերի տարիֆային արժեքի 50 տոկոսի արտոնություն ՍՍՀՄ երկաթուղային տրանսպորտով ուղևորվող զինհաշմանդամների և որոշ կատեգորիայի այլ կենսաթոշակառուների համար:

Հայրենական պատերազմի այն հաշմանդամները, որոնք քայլելու հնարավորություն չունեն, պետությունը նրանց ապահովում է փոխադրական միջոցներով: 1964—1967 թթ. 460 հաշմանդամների անվճար հատկացվել է



«Զապորոժեց» ավտոմեքենա, 286-ին՝ մոտոսայլակ, իսկ 115-ը լրիվ արժեքով ստացել են Մոսկվիչ ավտոմեքենա:

Կենսաթոշակների, նպաստների, և սոցիալական ապահովության այլ միջոցառումների համար 1966 թվականին Հայաստանում ծախսվել է 83, իսկ այս տարի կծախսվի 93 միլիոն ռուբլի, 1968 թվականի համար նախատեսված է 100 միլիոն ռուբլուց ավելի:

Հայաստանի աշխատավորները մեծ խանդավառությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի «Սովետական ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման միջոցառումների մասին» այս տարվա սեպտեմբերի 26-ի որոշումը: Այս որոշմամբ նախատեսվում է՝ աշխատավարձի նվազագույն չափը հասցնել 60—70 ռուբլու, բարձրացնել ժամանակավոր աշխատունակությունը կորցնելու դեպքում տրվող նպաստների չափերը, ավելացնել բանվոր-ծառայողների արձակուրդների տևողությունը, աստիճանաբար իջեցնել նրանցից գանձվող հարկերը, և կենսաթոշակների հարցում կատարել զգալի փոփոխություններ:

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի նոր որոշմամբ, կոլտընտեսության անդամները կենսաթոշակի անցնելիս (ըստ տարիքի) ձեռք են բերում բանվոր-ծառայողներին հավասար իրավունք, այսինքն՝ ծերության կենսաթոշակի անցնելու իրավունք ունեն տղամարդիկ՝ 60, իսկ կանայք 55 տարին լրանալուց հետո (60—65 տարեկանի փոխարեն): Դրա շնորհիվ եկող տարվանից մեր հանրապետությունում ծերության կենսաթոշակի կանցնեն ավելի քան 28 հազար կոլտնտեսական:

Կոլտնտեսության անդամների կենսաթոշակների բարելավման մյուս փոփոխությունը նրանց հաշմանդամության խմբերով վճարվող նվազագույն չափերի բարձրացումն է: Եթե նախկինում կենսաթոշակի իրավունք ունեին միայն I և II խմբի հաշմանդամները, ապա նոր օրենքով նաև III խմբինը, որոնք հաշմանդամ են դարձել աշխատանքային խեղման և պրոֆեսիոնալ հիվանդության պատճառով: Հաշմանդամության խմբերով վճարվող կենսաթոշակների նվազագույն չափերի փոփոխման շնորհիվ, ինչպես և III խմբի հաշմանդամ-կոլտնտեսականներին կենսաթոշակ սահմանելու կապակցությամբ 6000 կոլտնտեսականների տարեկան կվճարվի մոտ 350 հազար ռուբլի: 1968 թվականին կենսաթոշակառու կոլտնտեսականների թիվը կհասնի շուրջ 100 հազարի, որոնց կվճարվի 20 միլիոն ռուբլի, այսինքն՝ 60 տոկոսով ավելի, քան 1967 թվականին:

Անհրաժեշտ է նշել, որ կոլտնտեսականներին վճարվող կենսաթոշակների և նպաստների գումարից միայն 25 տոկոսը հատկացվում է կոլտնտեսությունների տարեկան եկամուտներից կատարվող մասհանումների, իսկ 75 տոկոսը՝ պետական բյուջեի հաշվին (5 միլիոն ռուբլի կոլտնտեսությունների եկամուտներից, իսկ 15 միլիոնը պետական բյուջեից):

Եկող տարվա հունվարից կբարձրացվեն բանակի շարքային, սերժանտային, ավագային կազմի կենսաթոշակի չափերը. I և II խմբի հաշմանդամներինը՝ 15, միջին և ավագ հրամկազմինը՝ 25 ռուբլով: Հինգ տարով պակասեցվում է զինծառայող հաշմանդամների ծերության կենսաթոշակի անցնելու տարիքը, տղամարդկանց համար 55 (նախկին 60-ի փոխարեն), իսկ կանանց համար՝ 50 տարին լրանալիս:

Նոր օրենքով, ծերության կենսաթոշակի անցնելու արտոնություն է սահմանվում նաև թեթևի արդյունաբերության ձեռնարկություններում՝ բարձր

ինտենսիվություն ունեցող աշխատանքներում զբաղված առանձին պրոֆեսիաների բանվորուհիներին։ Նրանց կենսաթոշակի նշանակման տարիքը 55-ից դարձվելու է 50։

Հաջորդ կարևոր նորությունը մանկությունից I և II խմբի հաշմանդամ դարձած երեխաների համար նպաստ սահմանելն է։ Որոշված է նրանց 16 տարին լրանալուց հետո տալ ամսական 16 ռուբլի։ Այս որոշման կիրառմամբ հանրապետությունում 1968 թվականին կվճարվի 500 հազար ռուբլի նպաստ։

ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի այս տարվա սեպտեմբերի 26-ի և ՍՍՀՄ Գերագույն սովետի հոկտեմբերյան սեսիայի որոշմամբ, կենսաթոշակների բնագավառում մտցված փոփոխությունների կապակցությամբ միայն 1968 թվականին մեր հանրապետությունում կթոշակավորվեն և կվերանայվեն 50 հազար հոգու կենսաթոշակները։

Սոցիալական ապահովության օրգանների կողմից վճարվող թոշակների և նպաստների գումարը, 1968 թվականին կկազմի 102 միլիոն ռուբլի կամ 1967 թվականի համեմատությամբ կաճի 29,3%-ով, 1957 թվականի համեմատությամբ՝ 2,5 անգամ։

Սովետական ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման միջոցառումները, որոնք քննարկվեցին ՍՄԿԿ Կենտկոմի վերջին պլենումում և իրենց արտահայտությունը գտան կուսակցության Կենտկոմի, սովետական կառավարության և ՍՍՀՄ Գերագույն սովետի այս տարվա հոկտեմբերյան սեսիայում ընդունած որոշման մեջ, մեկ անգամ ևս վկայում են ժողովրդի կյանքի պայմանների բարելավման ուղղությամբ կուսակցության և կառավարության մշտական հոգատարության մասին։

Լ. ՄԵԼՔՈՆՅԱՆ
Հայկական ՍՍՀ սոցիալական
ապահովության մինիստր

---

# ԿՈՆՍՈՒԼՏԱՑԻԱ

## ԱՐԵՎԱԴԱՐՁԱՅԻՆ ԱՖՐԻԿԱՅԻ ԵՐԿՐՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՏԵՆԴԵՆՑՆԵՐԸ

Մ. ՄԵԼՔՈՒՄՅԱՆ

Արդի արևադարձային Աֆրիկայի քաղաքականապես անկախ երկրների հասարակության սոցիալական կառուցվածքի բնորոշ առանձնահատկություններից մեկը, նախ և առաջ, այդ երկրներում գոյություն ունեցող հասարակական հարաբերությունների բարդությունն է։ Այդ բարդությունն արտահայտվում է նրանում, որ արևադարձային Աֆրիկայի համարյա բոլոր երկրներում մինչև այժմ էլ այս կամ այն չափով պահպանվում են նախասոցիալիստական հասարակական-տնտեսական հարաբերությունների բոլոր ձևերը՝ նախնադարյան-համայնքային կենսաձևը, ուր բացակայում է հողի մասնավոր սեփականությունը. նահապետական ստրկությունը, երբ ստրուկն ընտանիքի կամ գյուղի սեփականությունն է. ֆեոդալիզմի տարրական ձևեր, երբ պահպանվում է որևէ ընտանիքի կամ ցեղի առաջնորդի արտոնությունը. կապիտալիզմի չզարգացած ձևեր, երբ գյուղացիական զանգվածներից առանձնանում են անհատական ֆերմերներ, «առևտրական միջնորդներ»՝ մեծագնորդներ, կոմերսանտներ, ինչպես նաև՝ երբ առաջանում են տնայնագործների, քաղաքային մանր և միջին բուրժուազիայի խավեր, ֆաբրիկա-գործարանային և գյուղատնտեսական պրոլետարիատ։

Բայց հասարակական հարաբերությունների այդ ձևերից և ոչ մեկն իր ծաղկման մեջ չի գտնվում։ Որոշ ձևեր գտնվում են քայքայման, իսկ մյուսները իրենց ծագման և լինելիության պրոցեսում։ Դրա շնորհիվ ժամանակակից արևադարձային Աֆրիկայի երկրների տնտեսական կյանքում հասարակական արտադրության ինչպես կապիտալիստական, այնպես էլ մինչկապիտալիստական կացութաձևերից ոչ մեկի տեսակարար կշիռը գերիշխող չէ։

Բացի դրանից, այստեղ խիստ անհամասեռ է երիտասարդ ազգային պետությունների էթնիկական կազմը, չափազանց ուժեղ տարածված և խորապես արմատակալած են կրոնական դավանանքներն ու ցեղային սովորությունները, որոնց հետևանքով հասարակության քաղաքական վերնաշենքում միաձուլվել է կրոնական, ցեղային, քաղաքական և նույնիսկ տնտեսական հիերարխիան։ Այդ ամենը խիստ դժվարացնում է արդի արևադարձային Աֆրիկայի երկրների սոցիալական կառուցվածքի վերլուծությունը։ Հենց այդ բարդությամբ է բացատրվում այն հանգամանքը, որ տվյալ պրոբլեմի մեկնաբանման հարցում ժամանակակից արևմտյան և աֆրիկյան գրականության մեջ գոյություն ունեն մի քանի տեսակետներ։

Ոմանք պնդում են, թե արդի արևադարձային Աֆրիկայի երկրների հասարակությունը կազմված է միատեսակ զանգվածից, ուստի չկան հասարակական դասակարգեր և դասակարգային հակասություններ։ Ոմանք ասում են, թե տրադիցիոն աֆրիկական հասարակության դասակարգային շերտավորումը միայն

այժմ, քաղաքական անկախության նվաճումից հետո է սկսվել, հետևապես կարելի է կանխել, կասեցնել սոցիալական կոնֆլիկտները:

Վերջապես, ոմանք էլ ճանաչելով սոցիալական դասակարգերի գոյությունն արևադարձային Աֆրիկայի երկրներում, պնդում են, թե այստեղ դասակարգերը ծագել են ոչ թե սոցիալ-տնտեսական, այլ ռասայական հիմքի վրա:

Ինչպես տեսնում ենք, այդ երեք տեսակետները շատ քիչ են տարբերվում միմյանցից: Դրանք բոլորն էլ փաստորեն ժխտում են հասարակական դասակարգերի և դասակարգային պայքարի գոյությունը: Այդ տեսակետներն են պաշտպանում, մասնավորապես, սենեգալյան քաղաքական գործիչ Լեոպոլդ Սենգալը, սենեգալյան սոցիոլոգ Գաստոն Բերժեն, նիգերական քահանա Բեդե Օնուոխան, մարտինիկցի էմե Սեզարը, ֆրանսիական տնտեսագետ Պիեր Ալեքսանդրը, ամերիկացի Ռոսբերը և շատ ուրիշներ:

Բայց վերևում նշված բարդություններն ու դժվարությունները ամենևին էլ չեն նշանակում, թե հնարավոր չէ վերլուծել աֆրիկյան իրականությունը, գտնել որևէ օրինաչափություն, որը հատուկ կլիներ այդ երկրներին:

Այլ կերպ են մոտենում այդ պրոբլեմին մարքսիզմի հետևորդները: Նրանք գտնում են, որ տրադիցիոն աֆրիկական հասարակության սոցիալական շերտավորումը սկսվել է հասարակության արտադրող ուժերի զարգացման բնապատմական պրոցեսի հետևանքով, գաղութարարությունից շատ առաջ, բայց մի շարք օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների ազդեցության հետևանքով այդ պրոցեսը դեռ լրիվին չի ավարտվել: «Սենեգալի օրինակի հիման վրա,— գրում է Սենեգալի Աֆրիկական անկախ կուսակցության գլխավոր քարտուղար Մաջիմուտ Դիոպը,— մենք տեսնում ենք, որ այստեղ դասակարգեր գոյություն ունեն վաղուց, բայց նրանք միայն հիմա են ուժակալում, ոգի առնում»[1]:

Արդի արևադարձային Աֆրիկայի երկրների հասարակության սոցիալական կառուցվածքի բնորոշ գծերից մեկը, ինչպես արդեն ասել ենք, նախ և առաջ այն է, որ այստեղ լայնորեն գոյություն ունեն մինչսոցիալիստական հասարակական հարաբերությունների բոլոր ձևերը: Բայց պատմականորեն առաջացած օբյեկտիվ և սուբյեկտիվ պայմանների բազմազանության հետևանքով յուրաքանչյուր երկրում կամ մի խումբ երկրներում, կամ նույնիսկ միևնույն երկրի տարբեր շրջաններում այդ առանձնահատկությունն արտահայտվում է տարբեր ձևերով: Այնպիսի երկրներում, ինչպիսին օրինակ, Սենեգալը, Փղոսկրի ափը, Նիգերիան, Կոնգոն, Քենիան, Տանզանին, Ռոդեզիան, որոնք գտնվում են աֆրիկական մայրցամաքի առափնյա շրջաններում, համեմատաբար զարգացած են կապիտալիստական հասարակական-տնտեսական հարաբերությունները, իսկ տնտեսապես ավելի հետամնաց երկրներում՝ Գաբոնում, Չադում, Դագոմեում, Վերին Վոլտայում, Ուգանդայում առավել չափով տարածված են նահապետական-համայնքային հասարակարգի տարրերը՝ միահյուսված ֆեոդալիզմի տարրերի հետ:

Ուստի և արդի արևադարձային Աֆրիկայի երկրներում միատեսակ չէ նաև հասարակության սոցիալական շերտավորման աստիճանը: Եթե որոշ երկրներում արդեն կան կազմավորված, համեմատաբար զարգացած բանվոր դասակարգ և ազգային բուրժուազիա, ապա տնտեսապես հետամնաց երկրներում ու շրջաններում կապիտալիստական հասարակության այդ երկու հիմնական դասակարգերը գտնվում են, այսպես ասած, սաղմնավորման վիճակում: Բայց, ամբողջությամբ վերցրած, արդի արևադարձային Աֆրիկայի բոլոր երկրների համար բնորոշ են նահապետական-համայնքային հարաբերությունների արագ քայքայման տենդենցը, հասարակական-տնտեսական հարաբերությունների ավելի բարձր ձևերի ծագումն ու ձևավորումը, ընդ որում՝ շրջանցելով ստրկատիրության և ֆեոդալիզմի զարգացած ձևերը:

Հարկավոր է նկատել նաև, որ այդ պրոցեսն սկսեց առանձնապես ինտենսիվ կերպով զարգանալ այն բանից հետո, երբ արևադարձային Աֆրիկայի երկրների մեծամասնությունը ձեռք բերեց քաղաքական անկախություն, քանի

[1] Majhemout Diop: Classes et, ideologies de Classe au Sénegal. Acheve Dimprimer au mois, de mars, *1964*, p. *79*.



որ հենց գաղութային կախվածության վերացումն արդեն ստեղծում է որոշակի, ավելի առաջադիմական սոցիալ-տնտեսական պայմաններ հասարակության արտադրաուժերի արագ զարգացման համար, որն իր հերթին մեծապես արագացնում է արդեն իր դարն ապրած նահապետական-համայնքային հասարակարգի քայքայման պրոցեսը և հասարակական հարաբերությունների նոր, ավելի բարձր ձևերի առաջացումը:

Բայց արդի արևադարձային Աֆրիկայի երկրներում այդ պրոցեսը տեղի է ունենում բավականին յուրահատուկ ձևով: Դա արտահայտվում է նրանում, որ այստեղ տեղի է ունենում ոչ թե հին սոցիալական դասակարգերի վերացում և նորերի առաջացում, այլ կարծես թե արդեն գոյություն ունեցող դասակարգերի վերափոխման պրոցես: Բացի դրանից, տնտեսական հետամնացության շնորհիվ այդ յուրահատկությունը արտահայտվում է նաև ուժերի դասակարգային հարաբերությամբ, որը մեզ հնարավորություն է տալիս պարզելու արդի արևադարձային Աֆրիկայի երկրների սոցիալական կառուցվածքը:

Արդի արևադարձային Աֆրիկայի երկրների ամբողջ բնակչության հիմնական զանգվածը՝ 80—95 տոկոսը, գյուղացիությունն է: Գյուղատնտեսական արտադրությունը զարգացման շատ ցածր մակարդակի վրա է գտնվում: Հիմնականում այն բնատնտեսական բնույթ ունի, մի արտադրություն, որի սոցիալական հիմքը կազմում են նահապետական-համայնքային հարաբերությունները: Դրանով է հենց բացատրվում այն փաստը, որ մյուս մայր ցամաքների համեմատությամբ այստեղ շատ ավելի քիչ է զարգացած անհատական հողատիրությունը, որն արևադարձային Աֆրիկայում զարգանում է հիմնականում համայնքային դեմոկրատիայի շրջանակներում: Տրադիցիոն ցեղային հարաբերությունները, սովորույթները, ապրելակերպն ու մտածելակերպը, միևնույն տոհմին, ցեղին, համայնքին պատկանելը որոշակիորեն արգելակում են արտադրաուժերի զարգացմանը գյուղում: Մարքսի խոսքերով ասած «...բայց և այնպես մենք չպետք է մոռանանք, որ այս իդիլիկ գյուղական համայնքները, որքան էլ նրանք առաջին հայացքից անվնասակար թվան, միշտ էլ... մարդկային բանականությունը սահմանափակել են ամենանեղ շրջանակներով, նրան սնահավատության գործիք դարձնելով, նրա վրա տրադիցիոն կանոնների ստրկական շղթաներ դնելով, նրան ամեն մի վեհությունից, պատմական ամեն մի նախաձեռնությունից զրկելով» (ընդգծումը իմն է. Մ. Մ.) (Կ. Մարքս և Ֆ. էնգելս. Ընտիր երկեր երկու հատորում, հ. I, Հայպետհրատ, 1950 թ., էջ 410—411):

Սակայն գյուղում գոյություն ունեցող համայնքային սեփականությունը ամենևին էլ չի նշանակում, թե արդի արևադարձային Աֆրիկայի երկրների գյուղացիները, որոնց ճնշող մեծամասնությունը չի տեսել մասնավոր, ֆեոդալական-կալվածատիրական հողատիրություն, ազատ է շահագործումից, ինչպես դա փորձում են ապացուցել ժամանակակից աֆրիկյան շատ գաղափարախոսներ:

Արևադարձային Աֆրիկան գաղութային սիստեմի մեջ մտցնելը, մի կողմից, արագացրեց նահապետական-համայնքային հասարակական կարգի սոցիալական քայքայման պրոցեսը, մյուս կողմից՝ աշխատավոր մասսաների շահագործումը դարձրեց շատ ավելի ինտենսիվ և դաժան: Այստեղ տեղին է մեջբերել Մարքսի այն խոսքերը, որոնք վերաբերում են անգլիական գաղութային տիրապետությանը Հնդկաստանում: «Այնինչ՝ Անգլիան խախտեց հնդկական հասարակության բուն հիմքը, մինչև այժմ այդ հասարակությունը բարեփոխելու ոչ մի փորձ չանելով: Հին աշխարհի կորուստն առանց նորը ձեռք բերելու Հնդկաստանի բնակչի այժմյան աղետներին առանձին ճնշող բնույթ է տալիս...» (Ընդգծումը իմն է. Մ. Մ.) (Կ. Մարքս, Ֆ. էնգելս, Ընտիր երկեր երկու հատորում, հ. I, Հայպետհրատ, 1950 թ., էջ 405):

Անգլիական, ֆրանսիական, պորտուգալական, բելգիական գաղութարարները, քայքայելով աֆրիկյան գյուղացիների բնատնտեսությունը, դրան տալով ծայրահեղորեն մոնոկուլտուրայի բնույթ, աֆրիկյան գյուղատնտեսությունը դարձրին իրենց արդյունաբերության կցորդը: Մյուս կողմից, աֆրիկական գյուղացիներից խլելով առավել պտղաբեր հողամասերը, արևադարձային Աֆրիկայի երկրները դարձրին էժան բանվորական ուժի մի վիթխարի պահեստա-

մար։ Արևադարձային Աֆրիկայի քաղաքականապես երիտասարդ երկրների շատ կառավարություններ պաշտոնապես աջակցում և խրախուսում են մասնավոր ձեռնարկատիրությանը։

Այսպես, Գանայում կատարված պետական հեղաշրջումից հետո պետական ձեռնարկությունները հանձնվեցին մասնավոր անձանց, իսկ պետական գյուղատնտեսական կոոպերատիվները դարձան արտահանվող գյուղատնտեսական կուլտուրաների մշակման մասնավոր պլանտացիաներ։ Չնայած դրան, աֆրիկական բուրժուազիան տնտեսապես դեռևս շատ թույլ է, ապրում է նախնական կուտակման ժամանակաշրջանը, որը կատարվում է որոշ առանձնահատկությամբ։

Խոսելով կազմավորվող աֆրիկական բուրժուազիայի մասին, հարկավոր է կանգ առնել նրա մի խավի վրա ևս, որը ժամանակակից աֆրիկական քաղաքական գրականության մեջ ստացել է «բյուրոկրատական կամ պառլամենտական բուրժուազիա» անունը։ Ազգային բուրժուազիայի այդ աֆրիկական տարատեսակը խիստ կարևոր դեր է խաղում աֆրիկական հասարակության ինչպես քաղաքական, այնպես էլ տնտեսական կյանքում։ Այդ բուրժուազիան կարծես թե աճել է երիտասարդ, քաղաքականապես անկախ երկրների պետական ապարատից։ Ազգային կադրերի սուր պակասը ստիպել է պետական ապարատում, իշխանության կենտրոնական և տեղական մարմիններում ընդունել նախկին գաղութային վարչական ապարատի չինովնիկներին։ Այդ մարդիկ, որպես կանոն, ծագում են հասարակության արտոնյալ խավերից և պահպանում են նախկին ապրելակերպն ու մտածելակերպը։ Նրանցից շատերը պատասխանատու պոստեր զբաղեցնելով պետական ապարատում՝ պառլամենտում, իշխանության կենտրոնական և տեղական մարմիններում, իրենց նոր դրությունն օգտագործում են նյութական բարիքներ կորզելու և Եվրոպացու արտոնություններ վայելելու համար։

Այդ կատեգորիայի անձանց մոտ բուրժուական ապրելակերպի ու մտածելակերպի, բուրժուական հոգեբանության պահպանմանն ու ամրապնդմանը նպաստում է նաև ժամանակակից արևադարձային Աֆրիկայի երկրներում գոյություն ունեցող վիթխարի խզումը պետական չինովնիկների և անմիջականորեն նյութական արժեքներ արտադրողների աշխատավարձի միջև։ Այսպես, Սենեգալում միայն մինիստրներն ու դեպուտատները, այսինքն մոտավորապես հարյուր մարդ ստանում են տարեկան ազգային եկամտի մեկ տոկոսը։ Այդ մարդիկ, բացի բնամթերային եկամուտներից այնպիսի ռոճիկներ են ստանում, որոնք 60 անգամ գերազանցում են Սենեգալի գյուղացու տարեկան եկամուտը։

Գաբոնում պառլամենտի դեպուտատը մեկ ու կես անգամ ավելի է ստանում, քան անգլիական պառլամենտի անդամը։ Կոնգոյում գյուղացու տարեկան եկամուտը կազմում է 700 ֆրանկ, իսկ պառլամենտի դեպուտատի ռոճիկը հավասար է 165 հազար ֆրանկի ամսական կամ 2838 անգամ շատ գյուղացու տարեկան եկամտից։ Դագոմեում պետական և վարչական ապարատի պահպանման ծախսերը խլում են երկրի բյուջետային մուտքերի մինչև 60 տոկոսը։

Բացի դրանից, գանձագողությունը, կաշառակերությունը, կաշառատրվությունը, սպեկուլյացիան պետական չինովնիկների մեջ այնպիսի մասշտաբներ է ընդունել, որ նրանցից շատերը կարճ ժամանակում կարողացել են հսկայական հարստություն դիզել։ Նիգերիայում, օրինակ, եթե մինչև անկախությունը բնիկների մեջ չկար մեկը, որի կապիտալը գերազանցեր մեկ միլիոն ֆունտ ստեռլինգից, ապա անկախության չորս տարվա ընթացքում երկրում արդեն 40 նիգերիացի միլիոնատերեր են հաշվվում։ Նախկին ֆինանսների մինիստր Օկոտիե-Էբոյի կապիտալը մի քանի տարվա ընթացքում հասավ 14 միլիոն ֆունտի։ Նիգերիացիները նրան իզուր չկոչեցին «նիգերական Ռոկֆելեր»։

Այսպիսով, աֆրիկական բուրժուազիայի այդ տարատեսակի համար ծառայությունը պետական ապարատում դարձել է մեծ հարստություններ դիզելու աղբյուր։ Դրա հետևանքով աֆրիկական բուրժուազիայի այդ խավը հարստա-



նում և զարգանում է բավականին արագ, նույնիսկ ավելի արագ, քան առևտրա-վաճառականական բուրժուազիան։

Այս ամենից հետևում է, որ կազմավորվող աֆրիկական բուրժուազիան արագ տեմպերով ուժեր է հավաքում։ Սակայն մի շարք օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների շնորհիվ այդ բուրժուազիայի զարգացումը շատ ավելի դանդաղ է տեղի ունենում, քան բանվոր դասակարգի զարգացումը։ Այդ պրոցեսում արդեն նկատվում է նրա առավել ռեակցիոն մասի՝ բյուրոկրատական բուրժուազիայի համագործակցությունը իմպերիալիստական երկրների մոնոպոլիստական կապիտալի հետ, երկրներ, որոնք ժամանակակից արևադարձային Աֆրիկայի երիտասարդ, քաղաքականապես անկախ երկրների նկատմամբ վարում են նեոգաղութատիրական քաղաքականություն։ Դրա հետևանքով աֆրիկական բուրժուազիայի այդ տարատեսակը դառնում է ամենառեակցիոն գաղափարների կրողն ու աշխատավոր մասսաների մեջ անցկացնողը և հասարակական կյանքում ամեն տեսակ սոցիալական առաջադիմության հակառակորդը։ Այսպիսով, ժամանակակից արևադարձային Աֆրիկայի երկրների սոցիալական կառուցվածքի վերլուծությունը ցույց է տալիս.

**առաջին.** որ այստեղ արագ տեմպերով է կատարվում հասարակության սոցիալական շերտավորումը սոցիալ-տնտեսական շահերով հակադիր դասակարգերի, որի հետևանքով տարեցտարի ավելի ու ավելի են ուժեղանում դասակարգային հակասությունները աֆրիկական հասարակության ներսում.

**Երկրորդ.** որ արևադարձային Աֆրիկայի ժողովուրդները դաժանորեն շահագործվում են ինչպես տեղական շահագործող դասակարգերի, այնպես էլ օտարերկրյա մոնոպոլիստական կապիտալի կողմից։ Այդ պատճառով էլ այստեղ տեղի ունի քաղաքի և գյուղի աշխատավորական մասսաների մշտական աղքատացման պրոցես։

**Երրորդ.** արևադարձային Աֆրիկայի երկրների հիմնական սոցիալական ուժերը հանդիսանում են՝ 1) գյուղացիական մասսան, որը կազմում է բնակչության ճնշող գերակշռությունը, 2) երիտասարդ բանվոր դասակարգը, որը բավականին արագ տեմպերով զարգանում է. 3) ազգային բուրժուազիան, որն իրենից դեռևս լուրջ տնտեսական և քաղաքական ուժ չի ներկայացնում, 4) հասարակության միջակա սոցիալական խավերը, որոնք շատ կարևոր տեղ են գրավում արևադարձային Աֆրիկայի երկրների սոցիալական կառուցվածքում.

**չորրորդ.** առաջացած սոցիալ-տնտեսական պայմանների շնորհիվ իրենց զարգացման պրոցեսում ժամանակակից արևադարձային Աֆրիկայի երկրների ժողովուրդները կարող են շրջանցել ֆեոդալիզմի զարգացած ձևերը և անցնել հասարակական հարաբերությունների ավելի բարձր՝ ինչպես կապիտալիստական, այնպես էլ սոցիալիստական ձևերի։



վում է, թե Լենինն ինչպիսի նշանակություն էր տալիս աշխատողների անձնական շահագրգռման մեթոդին:

ԱՊԽ-ի հիշյալ որոշմամբ ստեղծվում է պահեստային գործի կարգավորման հանձնաժողով, որի նախագահ է նշանակվում Ա. Ա. Տրոյանովսկին: Վերջինս լավ տպավորություն չի թողնում Վ. Ի. Լենինի վրա: Այդ նույն նամակում Լենինը Ավանեսովին գրում է. «Իսկ Տրոյանովսկին խելացի չէ: **Դուք** եք պատասխան տալու այդպիսի «նախագահի համար, դուք անձամբ: Նկատի ունեցեք:

Այստեղ հարկավոր է խելացի մարդ» (նույն տեղը, էջ 639):

Ավանեսովը իրեն հատուկ համառ հետևողականությամբ ու անվիջում պահանջկոտությամբ իրագործում է Վ. Ի. Լենինի և կառավարության դիրեկտիվները երկաթուղային տրանսպորտի վերականգնման և բարելավման ուղղությամբ:

1922 թվականի օգոստոսի 18-ին ԺԿՍ-ի որոշմամբ Ավանեսովը նշանակվում է արտասահմանյան առևտրական բոլոր ներկայացուցչություններն ստուգող հանձնաժողովի նախագահի տեղակալ: Լինում է Բեռլինում, Լոնդոնում, Փարիզում և այլուր: Վերադառնալով, Վլադիմիր Իլյիչի համար նախապատրաստում է նյութերը, կազմում հանձնաժողովի եզրակացությունները: Դեկտեմբերի 5-ին Լենինին նա գրում է. «Թանկագին Վլադիմիր Իլյիչ: Ուղարկում եմ հանձնաժողովի եզրակացությունները կրճատված վիճակում: Դժբախտաբար չհաջողվեց կրճատել մինչև երեք էջ: Այդ աշխատանքը առայժմ սևագիր վիճակում է:

Հուսով եմ այսօր կամ վաղը այն վերջնականորեն մշակել և սիստեմի բերել: Սույնի առանձին կետերում դեռ բավարար պարզությամբ չեն շարադրված մեր դրույթները, բայց հուսով եմ մեր դրույթների հիմնական մտքերը հասկանալի կլինեն Ձեզ»[1]:

Լենինը Կենտկոմի պլենումում իր առաջարկները հիմնավորող նամակ է կազմում, հաշվի առնելով նաև Ավանեսովի՝ հանձնաժողովին ներկայացրած եզրակացությունները: Լենինը իր առաջարկների, մտադրությունների, ցանկությունների արդեն իսկ ստեղծված համոզմունքների ճշգրտությունն ստուգում էր ուրիշների, գործին տեղյակ մարդկանց միջոցով: Նա պարզապես խորհրդակցում էր բոլոր նրանց հետ, ում վերաբերում էր գործը:

1922 թվականի դեկտեմբերի 14-ի ցերեկվա ժամը $2^{25}$ րոպեին Լենինը քարտուղարին հանձնարարում է անմիջապես Ավանեսովին հանձնել նամակը և հետևյալ երկտողը. «Ուղարկում եմ իմ նամակը: Ետ վերադարձրեք մինչև ժամը 7-ը: Լավ մտածեցեք, ի՛նչ ավելացնել, ի՛նչը հանել, ինչպե՛ս դնել պայքարի հարցը»[2]:

Նկատի ունենալով արտաքին առևտրի մոնոպոլիայի հարցում Ավանեսովի ճիշտ դիրքորոշումը, արտաքին առևտրի հարցերի խոր իմացությունը, Լենինի առաջարկությամբ Ավանեսովը միաժամանակ նշանակվում է արտաքին առևտրի ժողկոմի առաջին տեղակալ:

1918 թվականի սկզբին կազմվեց սովետական սահմանադրության մշակման հանձնաժողով, որի նախագահը Սվերդլովն էր, քարտուղարը՝ Ավանեսովը: Հանձնաժողովում մի շարք սկզբունքային հարցերի շուրջ բացված բանավեճում նա պայքարում էր ձախ էսեռների ներկայացուցիչների դեմ պաշտպանելով սահմանադրության լենինյան սկզբունքները: Հայտնի է նաև Ավանեսովի ճիշտ կողմնորոշումը «ձախ» կոմունիստների դեմ Լենինի մղած պայքարում, երբ ԿԳԿ-ում նա առաջարկեց լենինյան բանաձև և ինչպես հարկն է պաշտպանեց այն:

Կարդում ես ԺԿՍ-ի և ԱՊԽ-ի արձանագրությունները և զարմանում, թե Ավանեսովը որքան բազմապիսի հարցերի մշակմանն է մասնակցել, ինչպիսի՜ հանձնաժողովների աշխատանք ղեկավարել, դրանց մասին ԺԿՍ-ում և ԱՊԽ-ում, կամ Լենինին անձամբ զեկուցել:

ԱՊԽ-ում դրսևորվում է Ավանեսովի՝ որպես պետական գործչի, կերպարը. ԱՊԽ-ում գրեթե բոլոր կարգադրիչ նիստերի նախագահը 1920—23 թվականներին Ավանեսովն էր: Լենինը անվերապահորեն վստահում էր նրան: ԱՊԽ-ի կարգադրիչ նիստերի որոշումները հաստատվում էին ԺԿՍ-ի նախագահ Վ. Ի. Լենինի կողմից:

Յուրաքանչյուր այդպիսի նիստից հետո նախագահողը նիստի որոշումներն անձամբ ներկայացնում էր Իլյիչին: Լենինը, հավատալով Ավանեսովի ճշտապահությանը, միշտ հաճույքով էր լսում նրա զեկուցումները: Պահպանված է **Լենինի աշխատանքային մեկ օրը** (1921 թվականի փետրվարի 4-ը) սղագրությունը:

Քարտուղարը զեկուցում է, որ նշված ժամին սպասում է Ավանեսովը: Լենինը խնդրում է ներս հրավիրել:

Ավանեսովը ներկայացնում է Իլյիչին Աշխատանքի և պաշտպանության խորհրդի կարգադրիչ նիստի արձանագրությունը:

ԼԵՆԻՆ — Սա ես արդեն տեսել եմ և ընկեր Ֆոտիևային եմ հանձնել մի քանի դիտողություններ... Դուք նրանից վերցրեք... Առանց ավտոմեքենաների մենք կկործանվենք: Պետք է անհապաղ կարգացնել այս գործը և հույս չդնել արտասահմանում ավտոմեքենաներ գնելու վրա: Այսպես էլ ասեք Ձեր տնտեսվարներին... Ռյաբուշինսկու նախկին արհեստանոցը, որտեղ նա փորձում էր հավաքել ավտոմոբիլի արտասահմանյան դետալները, մենք պետք է դարձնենք

---

[1] ЦПА ИМЛ, ф. 2, оп. 1, д. 23510:

[2] *Նույն տեղը, գ. 29525:*



ավտոմոբիլի մեծ գործարան, այնպիսին, որ նա դառնա Ամերիկայի Ֆորդի մրցակիցը...

Դուք համաձա՞յն եք սրան:

ԱՎԱՆԵՍՈՎ—Համաձայն եմ, Վլադիմիր Իլյիչ: Դեռ ավելին: Ցանկանում եմ Ձեզ հաղորդել, որ մենք ունենք այդ գործի էնտուզիաստների մի փոքրիկ խումբ:

ԼԵՆԻՆ — Դե՛, ավելի լավ, քանի որ գործը սիրող մարդիկ էլ կան, նշանակում է այն հաջող կկարգանա... (կարդում է) ... Պետրոգրադին վառելանյութ մատակարարելու մասին... Ես խնդրում եմ նկատի ունենալ, որ այդ հարցը ամենաառաջնակարգը և ամենակարևորն է...

Պետրոգրադը հուսահատ դրության մեջ է, նրա բնակչությունը ծանր դժվարություններ է կրում, և մենք պարտավոր ենք ամեն ջանք գործադրել պետրոգրադցիներին օգնելու համար: Պետք է վերահսկել այն աշխատողների յուրաքանչյուր քայլը, ում վրա դրված է Պետրոգրադը վառելիքով ապահովելու պարտավորությունը... Ես Ձեզ շատ եմ խնդրում, ընկեր Ավանեսով, այդ կարևորագույն գործը անուշադրության չմատնեք...

ԱՎԱՆԵՍՈՎ — Կհետևեմ, խոստանում եմ:

ԼԵՆԻՆ—Դե՛, լավ, շատ լավ, Ձեր խոսքին ես հավատում եմ:

Անցնենք առաջ...»

Աշխատանքի և պաշտպանության խորհրդի նիստերը հաճախ նախապատրաստում էր Ավանեսովը, որպես ԱՊԽ-ի նախագահի տեղակալներից մեկը: Ավանեսովը նաև ԲԳՊԽ-ի (Բանվորա-գյուղացիական պաշտպանության խորհուրդի) անդամ էր. տնտեսական ու ռազմական բազում հարցերի մասին նա հանդես է եկել զեկուցումներով, ղեկավարել պաշտպանական նշանակություն ունեցող հարցերին նվիրված հանձնաժողովներ, ընդհանրացրել նրանց եզրակացությունները և զեկուցել ԲԳՊԽ-ին:

ԲԳՊԽ-ի գոյության մեկուկես տարվա ընթացքում Ավանեսովը հանդես է եկել 82 զեկուցումով, նախագծերով, հանձնաժողովների եզրահանգումներով, մտցրել շատ օրինագծեր: ԲԳՊԽ-ի 110 նիստերից 65-ին մասնակցել է, մնացածներից բացակայել է այնպիսի անհետաձգելի հարցերի մշակման և լուծման պատճառով, որպիսիք Լենինն ավելի կարևոր համարելով՝ Ավանեսովին ապատել է:

1920 թվականի ապրիլին Բանվորա-գյուղացիական պաշտպանության խորհուրդը վերակառուցվեց, դառնալով աշխատանքի պաշտպանության խորհուրդ (ԱՊԽ), որի նախագահության անդամն ու փոխարինող նախագահներից մեկը՝ Ավանեսովն էր: ԱՊԽ-ի կարգադրիչ նիստերում համարյա միշտ նախագահում էին ԺԿՍ-ի նախագահի տեղակալները և, հիմնականում՝ Ավանեսովը, որպես ԱՊԽ-ի նախագահության անդամ նա նախագահում էր նաև պլենար նիստերում:

Ավանեսովը եղել է ԱՊԽ-ի երկաթուղային և ջրային տրանսպորտի ու վառելիքի հանձնաժողովների անփոփոխ նախագահը՝ 1919-ից 1922 թվականը: Այդ ժամանակամիջոցում ԺԿՍ-ում, ԲԳՊԽ-ում և ԱՊԽ-ում դրանց վերաբերյալ քննարկված բոլոր հարցերի մասին զեկուցել է նա: 1920 թվականի հունիսի 11-ին ԱՊԽ-ի նիստում Ավանեսովը զեկուցում է լեհական հարձակումից պաշտպանվելու նպատակով ձեռնարկված միջոցառումների մասին: ԺԿՍ-ի որոշմամբ Ավանեսովը մինչ այդ նշանակված էր լեհական հարձակման դեմ հանրապետության ուժերի մոբիլիզացման հանձնաժողովի նախագահ: Այդ հանձնաժողովի արձանագրություններն ու փաստաթղթերն ուսումնասիրողներին զարմանք են պատճառում նրա արագ, համարձակ, վճռական, կոնկրետ ու խստապահանջ գործողությունները:

1922 թվականի հունվարի 25-ին Ավանեսովը զեկուցում է **Մյասնիկյանի հեռագիրը Հայաստանի սերմացուի պահանջը բավարարելու մասին:** Հայտնի է, որ նրա գործադրած ջանքերով այդ հարցը հղվում է հողժողկոմատին՝ եզրակացություն տալու, ապա՝ քննարկվում է հատուկ հանձնաժողովում, ԱՊԽ-ի մի նիստում, և դրական լուծում է ստանում. նիստը նախագահում էր Ավանեսովը:

Որպես Կենտգործկոմի քարտուղար 1918 թվականի սկզբից Ավանեսովը Ժողովրդական Կոմիսարների սովետի անդամ էր: Ինչպես ԲԳՊԽ-ում և ԱՊԽ-ում, այնպես էլ ԺԿՍ-ում, Լենինի հանձնարարությամբ նա ղեկավարում էր այն հանձնաժողովների աշխատանքը, որոնք մշակում էին պետական կյանքի համար հրատապ նշանակություն ունեցող հարցեր, որոնցից կարևորագույնները նա ներկայացնում էր ԺԿՍ-ի քննարկմանը:

Ինչպես ցույց են տալիս նամակները, Լենինը միշտ մեծ ուշադրությամբ հաշվի էր առնում աշխատողների գիտելիքներն ու կարծիքը, պետական կարևոր հարցերի լուծման, տնտեսական շինարարության և այլ բնագավառներին վերաբերող հարցերի քննարկման ժամանակ խորհրդակցում նրանց հետ, ում վերաբերում էր գործը կամ, ինչպես ինքն էր ասում՝ «մասնագետների» հետ: Լենինը բացառիկ նշանակություն էր տալիս որոշումների մշակմանը: Նա մերժում էր կոնկրետ ցուցումներ չպարունակող որոշումներն ու դիրեկտիվները: Հիմնարկների և կազմակերպությունների աշխատանքի հիմնական ուղղությունն ընտրելու, ճիշտ որոշումներ ընդունելու համար, ասում էր նա, պետք է կարողանալ ընդգրկել երևույթների ամբողջությունը, գնահատել դրանք: Ճիշտ որոշում ընդունելը պրակտիկան ընդհանրացնելու կարողության արտահայտությունն է: Նա պահանջում էր, որ դրանք լինեն հակիրճ, գրագետ ու պարզ ձևակերպված: Իր կազմած որոշումների նախագծերը Լենինն ուղարկում էր

ծառայությունը, որի գործնական օգնությունը ամեն քայլափոխում զգում և բարձր էինք գնահատում բոլորս:

Նա կարողանում էր մանկավարժ-հոգեբանի պես կռահել դիմացինի մտորումները, միաժամանակ հստակ, կոնկրետ, դյուրըմբռնելի շարադրել, արտահայտել իր մտքերը:

— Մի անգամ, երբ ես նրան զեկուցեցի իմ ստուգման արդյունքների մասին,— հիշում է Բասինը,— ահա թե ինչպիսի դիտողություն արեց ինձ. «Հրահանգները, լինեն դրանք գրավոր թե բանավոր, պետք է ո՛չ միայն բացահայտեն թերությունները, այլև նշեն տեղերի դրական փորձը, ո՛չ միայն խնդիրներ առաջադրեն, այլև միջոցներ, ուղիներ նշեն թերությունների վերացման համար»:

Հրամանատար լենինյանը ակտիվ մասնակցում էր Կարմիր բանակի քաղաքական վարչության կուսակցական կազմակերպության և պաշտպանության ժողովրդական կոմիսարիատի ողջ կոլեկտիվի աշխատանքներին: Խիստ պահանջկոտության, թերությունների հանդեպ անհանդուրժողականության, բոլշևիկյան անդադրում բնավորության, արտակարգ համեստության ու սրտացավության շնորհիվ աշխատանքային ընկերների, շարքային զինվորների շրջանում նա վաստակել էր մեծ հեղինակություն ու սեր: Պատահական չէ, որ երբ պետք եղավ Մոնղոլիայի երիտասարդ ժողովրդական բանակի համար քաղաքական խորհրդական ուղարկել, Կարմիր բանակի քաղաքական վարչության պետ Յա. Գամառնիկը և նրա տեղակալ Հայկ Հովսեփյանն առաջադրեցին Գևորգ Սաֆրազբեկյանի թեկնածությունը:

Պաշտպանության ժողովրդական կոմիսարի հրամանով 1936 թվականին Սաֆրազբեկյանը նշանակվեց Մոնղոլական ժողովրդական բանակի քաղաքական վարչության ռազմա-քաղաքական խորհրդատու: Անհրաժեշտ էր Կարմիր բանակի փորձը փոխանցել, կազմակերպել նրանց քաղաքական դաստիարակության, ռազմական պատրաստականության գործը: Այդ տարիներին էլ հենց ճապոնական զավթիչները խուժեցին Մոնղոլիա՝ գրավելու այն: Կատաղի մարտեր էին մղվում Խալխին-գոլի շրջանում: Մոնղոլական ժողովրդական բանակը ջախջախիչ հարված հասցրեց ճապոնացիներին և վռնդեց նրանց Մոնղոլիայի սահմաններից: Այդ մարտերում իր խիզախ մասնակցությամբ, ռազմագիտական խելացի խորհուրդներով ամենքի ուշադրությունն էր գրավել Գևորգ Սաֆրազբեկյանը:

Փոքր Խուրուլդանի որոշմամբ նա արժանացավ Մոնղոլիայի մեծագույն պարգևին՝ Սուխե-Բատորի շքանշանին: Իսկ 1937 թվականին Կարմիր բանակին մատուցած լավագույն ծառայությունների համար Սովետական Միության կենտրոնական գործադիր կոմիտեն նրան պարգևատրեց Կարմիր դրոշի շքանշանով:

1937 թվականին Սաֆրազբեկյանին ետ կանչեցին Մոնղոլիայից: Նա այլևս չվերադարձավ իր այնքան սիրած, իրեն այնպես ջերմորեն սիրող զինվորների մոտ...

ԲՈՐԻՍՈՎ Ե. Տ.
Գեներալ-մայոր

ՄԻՆԱՍՅԱՆ Մ. Մ.
Գեներալ-մայոր



# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ 1967 ԹՎԱԿԱՆԻ ՀԱՄԱՐՆԵՐՈՒՄ ՏՊԱԳՐՎԱԾ ՀՈԴՎԱԾՆԵՐԻ ԵՎ ՆՅՈՒԹԵՐԻ ՑԱՆԿ

## ԱՌԱՋՆՈՐԴՈՂՆԵՐ



## ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 50-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



## Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



## ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ



## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



## ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԵՐԻ ՄԱՍԻՆ



## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ



## ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ







## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ



## ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ



## ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ



## ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ



## ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ



## ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ





## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԳԱՎՐԻԼՈՎ Լ. Մ., ԿՈՒՏՈՒԶՈՎ Վ. Վ.—Մեծ Հոկտեմբեր *(կարևորագույն իրադարձությունների տարեգրություն).— Մ., Քաղհրատ, 1967, 160 էջ։ Հեղինակներն օգտագործել են Վ. Ի. Լենինի աշխատությունները, «Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի համար մղված պայքարում» վավերագրական երկհատորյա ժողովածուն, «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը» տասհատորյակը և հինգհատորյակը ու այլ գործեր։ Սով փաստերից նրանք ընտրել են կարևորագույնները և արտացոլել ամենանշանակալից իրադարձությունները։*

*Գիրքը նախատեսված է կուսակցական և կոմերիտական պրոպագանդիստների, դասախոսների, ինչպես և Հոկտեմբերյան հեղափոխության պատմությունն ուսումնասիրողների համար։*

ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ Ա. Ն.— Հոկտեմբերի բարիկադների վրա։— *Եր., «Հայաստան» հրատ., 1967 թ., 362 էջ։*

*Վավերագրական այս երկում հեղինակը ցույց է տվել հայ ժողովրդի անմահ զավակների ավանդը Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի գործում, նրանց ակտիվ, անձնուրաց մասնակցությունը Պետրոգրադում, Մոսկվայում, Հյուսիսային Կովկասում և այլուր մղված մարտերին։*

ԿԱՍՅԱՆ Ս.—Ընտիր երկեր.—*Եր., «Հայաստան» հրատ., 1967 թ., 456 էջ։*

*Վ. Ի. Լենինի զինակից Ս. Կասյանի (Տեր-Գասպարյան) (1876—1937) երկերի այս ժողովածուում զետեղված են Անդրկովկասում և Հայաստանում ծավալված հեղափոխական շարժման և սոցիալիստական շինարարության մասին տարբեր ժամանակներում նրա գրած հոդվածները։*

ՌԵՅՄԱՆ ՄԱՔՍ.—Մեծ Հոկտեմբերի ազդեցությունը Գերմանիայի աշխատավորության վրա.— *Մ., Քաղհրատ, 1967, 151 էջ։*

*Գերմանիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղարը սույն գրքույկում պատմել է Հոկտեմբերյան մեծ հեղափոխության խոշոր ներգործությունը գերմանական ժողովրդի վրա, վերհանված է հանուն սոցիալական առաջադիմության և սոցիալիզմի հաղթանակի գերմանական պրոլետարիատի, հատկապես Արևմտյան Գերմանիայի (ԳՖՀ) աշխատավորության մղած պայքարը։*

ԶԱՆԵԳԻՆ Բ., ՄԻՐՈՆՈՎ Ա., ՄԻԽԱՅԼՈՎ ՅԱ.—Չինաստանի իրադարձությունների շուրջ.— *Քաղհրատ, 1967, 72 էջ։*

*Այս բրոշյուրում համառոտակի վերլուծվում են Չինաստանում ծավալված այն շարժման պատճառներն ու աղբյուրները, որոնք Մաո Ցզե-դունն ու նրա կողմնակիցներն անվանել են «պրոլետարական կուլտուրական մեծ հեղափոխություն»։ Այն նախատեսված է պրոպագանդիստների, միջազգային թեմաների շուրջ զեկուցողների, ագիտատորների և ընթերցող լայն մասսաների համար։*


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.։

Խմբագրության հասցեն՝ Երևան—16

Հեռախոսներ, գլխավոր խմբագիր՝ 7—16—90, պատասխանատու քարտուղար՝ 7—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 7—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 7—19—80։

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 11/XII 1967 թ.։

ՎՖ 04258 Պատվեր 2432 Տիրաժ 9785 Գինը 25 կոպ.։

*Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51։*


## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

*«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։*

*Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։*

*Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։*

*Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։*

7150

77783

ԳԻՆԸ 25 Կ.

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՇՈԿՈԼԱԴԸ ԵՎ ԱՏԱՄՆԵՐԸ

*Երկրագնդի բնակչության բացարձակ առողջ ատամներ ունեցող մարդկանց տոկոսը չափազանց քիչ է. ճնշող մեծամասնության ատամները այս կամ այն չափով փչացել են կարիես տհաճ հիվանդության հետևանքով:*

*Գիտնականները անդադար միջոցներ են փնտրում կարիեսի դեմ: Օրինակ, հաջողվել է որոշել, որ վանիլը և կակաոն ի վիճակի են արգելակելու ատամների քայքայումը (ըստ երևույթին շնորհիվ նրանց մեջ պարունակվող տանինների): Եթե դա այդպես է, ապա կարելի է առաջարկել երեխաներին շատ շոկոլադ տալ: Բայց ավա՜ղ: Տանինների ազդեցությունը «փոխհատուցվում է» շոկոլադի մեջ պարունակվող շաքարի վնասակար ազդեցությամբ:*

## ԱՍԹՄԱՆ ԵՎ ԼՍՈՂՈՒԹՅՈՒՆԸ

*Մարդը սովորաբար լսում է այնպիսի ձայներ, որոնց հաճախականությունը չի անցնում 10—20 կիլոհերցից. մանկության ժամանակ այդ սահմանային հաճախականությունը առավելագույն է, որը հասակի հետ նկատելի չափով իջնում է: Սակայն նկատվել է, որ ասթմայով հիվանդ մարդիկ ի վիճակի են լսելու ավելի բարձր հաճախականություններ. եթե առողջ մարդկանց մոտ միջին սահմանային հաճախականությունը 15 կիլոհերցի շրջանակներում է, ապա ասթմատիկների մոտ այն հասնում է 25 կիլոհերցի, իսկ ասթմայով հիվանդ երեխաներն ընկալում են նույնիսկ 30 կիլոհերց հաճախականության ձայներ: Այդ հետաքրքիր երևույթի պատճառը, ըստ երևույթին, թաքնված է ասթմայով հիվանդ մարդկանց օրգանիզմի ընդհանուր զգայունակության բարձրացման մեջ: Ինչպես հայտնի է, այդպիսի մարդիկ ունեն ինչպես մեծ էմոցիոնալ գրգռականություն, այնպես էլ ավելի ուժեղ ռեակցիա՝ զանազան քիմիական և ֆիզիկական ազդեցությունների նկատմամբ:*

## ՆԱՎԹԸ ՊԱՐԿԻ ՄԵՋ

*Կաուչուկի թերթերով երեսպատված մեծ ձագարաձև փոսի մեջ լողում է ռետինե պարկ: Նա համարյա նույն ծավալի է, ինչ ձագարաձև փոսը, բայց դրանց բաժանում է ջրի շերտը: Պարկը լիքը լցված է նավթով: Այդպիսի նավթապահեստը, անգլիական ինժեներների կարծիքով, ունի մի շարք արժանիքներ. այն կարելի է կառուցել չափազանց հեշտ ու արագ, ջրի հետ հարևանության շնորհիվ հրդեհի հնարավորությունը զգալի նվազում է, իսկ եթե հանկարծ վառելիքը սկսում է հոսել ջրի երեսին, անմիջապես նկատվում են յուղային բծեր:*

## ՑՈՒՐՏԸ ԵՎ ԱՐՅՈՒՆԸ

*Սառնարանային սարքավորման Կենտրոնական լաբորատորիայի աշխատակիցները նախագծել են սառնարան, որի մեջ հեղուկ ազոտի ջերմաստիճանի (—196°) պայմաններում ամբողջ երեք տարի կարելի է պահել բոլոր դեղամիջոցներից ամենաթանկը՝ արյունը: Առաջներում արյունը պահվում էր երեք շաբաթից ոչ ավելի (Լեհաստան):*

## ԱՌԱՆՑ ՉԱՓԱՓՈՐՁԵՐԻ

*Վարշավայում մեծ համբավ ունի մասնագիտությամբ մաթեմատիկոս և սիրող դերձակ Ա. Էլերտը: Նա հեռակա կարգով հանձն է առնում կարել տղամարդու ցանկացած կոստյում, առանց չափափորձերի: Դրա համար բավական է նրան հաղորդել միայն մարդու քաշը, հասակը, ուսերի լայնությունը, կոնքի չափը: Էլերտը պնդում է, որ գերազանց կարված կոստյումը հետևանք է բարդ մաթեմատիկական հաշվումների ու բանաձևերի, որոնք երբեք չեն խաբում:*

*Ա. Էլերտի դերձակային արվեստի մասին շուտով լույս կտեսնի գիրք, որը գրասին խոսվել է կիրառական մաթեմատիկայի ինստիտուտի աշխատակիցների կողմից:*